

*Երբ գիշերում էին գետնափոր տնակում... Դրայը միշտ ծածկում էր անհանգիստ քնող Սոխակին։*

*(Տես «Լեզուն» կաթսայի մեջ)*

ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

№ 2

ՓԵՏՐՎԱՐ

1957 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 29-ՐԴ ՏԱՐԻ



# «ԼԵԳԻՈՆԻ» ԿԱԹՍԱՅԻ ՄԵՋ

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

Ցուրտ ձմեռ էր։ Երկու հոգի նստած խրամատի հատակին՝ ճաշում էին, այսինքն՝ սև պաքսիմատը թաթախում էին պահածոյի ամանում եռացրած ջրի մեջ և ուտում։ Դե նրանք դրանից էլ գոհ կլինեին, եթե պաքսիմատը շատ լիներ։ Քիչ առաջ նրանցից ավագը, որ գերմանական եֆրեյտորի հագուստով էր և կարճ ու շեկ մորուք ուներ, բաց արեց մթերքի տոպրակը, սկսեց հաշվել մնացած պաքսիմատը։ Հինգ կտոր պաքսիմատ կար ընդամենը։ Մորուքավորը մի պահ մտածմունքի մեջ ընկավ, բայց նկատելով, որ պաքսիմատի մի կտորը մյուսներից ավելի մեծ է, նա մեջտեղից երկու կես արեց և նորից հաշվեց։ Հիմա արդեն վեց կտոր կար։ Նա չորսը թողեց տոպրակի մեջ և, երկուսը դուրս հանելով, մեկը իրեն պահեց, մյուսը մեկնեց իր կողքին նստած՝ անբեղ ու անմորուք, բայց հսկայամարմին երիտասարդին, որ օբեր-լեյտենանտի տարբերանշաններ ուներ։

Երիտասարդը անխոս հասկացրեց, որ քիչ է։

— Առայժմ բավական է, — մաքուր ռուսերենով, հազիվ լսելի շշնջաց մորուքավորը,— ո՞վ գիտի, թե դեռ ինչքան պիտի թափառենք։

Երիտասարդը լռեց, և ահա նրանք «ճաշում էին»։ Ուտում էին և ուշադիր լսում շրջապատի ամեն մի շշուկ։ Թեև խրամատն այդ մասում վերևից էլ էր ծածկված, և ճակատային գիծն էլ բավական հեռու էր, էլի վտանգավոր էր. հետո՞ ինչ, որ գերմանական հագուստով էին...

Բայց ես դեռ չեմ ասել, թե դրանք ովքեր էին, ի՞նչ մարդիկ. ռուսերեն խոսող գերմանացինե՞ր էին, թե՞ գերմանական հագուստով սովետական զինվորներ։ Եվ քանի որ այս բոլորը, ինչ պիտի պատմեմ, մեր զորամասում է տեղի ունեցել, և ես էլ ամեն ինչ գիտեմ, ավելի լավ է պատմեմ սկզբից։

* * *

Մեր անընդհատ հարձակվող զորամասերն հանկարծ կանգ առան։ Խրամատավորվելու հրաման եկավ, և ոչ ոք չգիտեր, թե ինչու։ Արդեն երկու շաբաթ էր, կանգնած էինք և առաջ չէինք շարժվում։ Գիշերները գերմանացիները կրակում էին վախեցնելու համար, իսկ ցերեկները երբեմն փոխհրաձգություն էր տեղի ունենում մեր ու նրանց միջև, բայց դե դա կռիվ չէր։ Ահա այդ օրերին էր, որ մեր հետախուզական դասակի հրամանատարին գնդապետը շտապ կանչեց։

Մենք ազատ էինք, և ընդարձակ գետնատանը որս ավտոմատն էր կարգի գցում, որս՝ սափրվում։

Երկու հոգի էլ չգիտես որտեղից շախմատ էին ճարել և խաղում էին։ Մեր հրամանատարն հաճախ էր լինում գնդապետի մոտ, բայց այդ օրը կապավորի ծայնի՞ց էր, թե նրանից, որ նա ասաց «շատ շտապ», կամ գուցե առանձին պատճառ էլ չկար դրա համար, բայց բոլորս էլ զգացինք, որ խնդիր ենք ստանալու։ Եվ միայն Դրոզդովը, որ մի կարմրբրաշեկ տղա էր, ասաց.

— Գործ է բացվում։

Եվ այդ գործն իրոք բացվեց։

Գնդապետի մոտից վերադառնալով, հրամանատարը հենց մուտքի մոտ էլ հինգ հոգու անուն կարդաց և ասաց, որ շտապ դուրս գան շարվելու։



մի քանի րոպեից հետո մենք արդեն կազմ ու պատրաստ կանգնել էինք հողատան մուտքի մոտ և սպասում էինք հրամանատարին, որ նորից գընդապետի մոտ էր գնացել։ Մեր դասակի մյուս տղաները նույնպես դուրս էին եկել և նախանձով ու կարեկցանքով նայում էին մեզ։ Նախանձում էին, որ իրենք չեն ընկել ցուցակում, կարեկցում էին... Դե հետախույզի գործը վտանգավոր է և, բոլորը չէ, որ վերադառնում են։

* * *

Կես գիշերն անց էր։ Սպիտակ խալաթներ հագած, ձյան միջով մենք սողում էինք դեպի գերմանական դիրքերը։ Մեր խնդիրն էր՝ անցնել թըշնամու թիկունքը և հակառակորդի ուժերի մասին տեղեկություններ բերել։ Վտանգավորն այն չէր, որ անցնում էինք ականապատված տեղանքով, այլ այն, որ գերմանացիներն իրենց սովորության համաձայն հաճախակի հրթիռներ էին արձակում, որոնք փոքրիկ պարաշյուտներից կախվում էին օդում և երկար ժամանակ լուսավորում շրջապատը։

Քողարկման սպիտակ խալաթները մեզ փրկում էին։ Իրարից մի հինգ-վեց քայլ հեռու սողում էինք առաջ՝ ականապես նայելով գերմանական դիրքերին։ Դեռ ճանապարհի կեսը չէինք անցել, երբ ես նկատեցի, որ մենակ եմ մնացել։ Կանգ առա և իմ աջ կողմում հազիվ նշմարեցի երկու հոգու, որ աննըկատելիորեն սողում էին առաջ, իսկ ձախից ոչ ոք չկար։ «Զլինի՞ թե ետ են ընկել»,— անցավ մտքովս, բայց մտածելու ժամանակ չկար, [illegible] էր

առաջ գնալ։ Ինձանից մի քանի քայլի վրա գերմանական ավտոմատավորը մի երկար կրակահերթ տվեց։ Ես կանգ չառա, լավ գիտենալով, որ նրանք վախեցնելու համար սովորություն ունեն մերթ ընդ մերթ կրակելու։ Հանկարծ պայթեց հրթիռը, և ուղիղ մեր գլխավերևում կախվեց հսկայական ջահը։ Հենց այդ րոպեին էլ աջից անկանոն կրակոցներ լսվեցին։ Գերմանացիները մեզ նկատել էին և ուժեղ կրակ բացեցին։ Մնում էր կռվով անցնել դիրքերը, բայց դա այնքան էլ հեշտ բան չէր։ Իրար ետևից հրթիռները երկինք բարձրացան։ Գերմանացիներն սկսեցին ավելի ուժեղ կրակել։ Կրակել սկսեցին նաև մեր դիրքերից։ Անցնելն արդեն անկարելի էր։ Մենք սկսեցինք ետ նահանջել և շուտով դուրս եկանք վըտանգավոր գծից։ Անտառի եզրին իրար գլխի հավաքվեցինք, բայց ընդամենը երեք հոգի, երկուսը չկային։ Զալոյանն ու Դրաչը։ Մեր դասակի ամենահաղթանդամները, մտերիմ ընկերներ։ Կասկած չկար, որ նրանք զոհվել էին։ Ընկերների կորուստը մի կողմից, մյուս կողմից անհաջողությունը մեզ այնպես էին ընկճել, որ նույնիսկ չնկատեցինք, թե ինչպես մեզ մոտեցավ դասակի հրամանատարը։

— Հը՛, տղերք, վիրավորներ չկա՞ն,— հարցրեց նա և անմիջապես էլ ավելացրեց.— լավ, գնացինք,— և առաջ ընկավ։

Մենք տեղներիցս չշարժվեցինք։ Զարմանալի է, որ նա չի նկատում մյուսների բացակայությունը։

— Ընկեր հրամանատար, թույլ տվեք զեկուցել,— կմկմաց Դրոզդովը՝ մեր խմբի ավագը։

— Շտապում, շտապում կզեկուցես։ Առանց զեկուցելու բան էլ չկա։ Ի՞նչ եք քթներդ կախել, ամեն ինչ կարգին է, դուք ձեր խնդիրը կատարեցիք։

Մենք նոր միայն գլխի ընկանք, թե ինչ է եղել: Հեռվում դեռ շարունակվում էր փոխհրաձգությունը, իսկ մենք արդեն գրկախառնված թավալվում էինք ձյան մեջ:

Ամեն ինչ հասկանալի էր:

Դուք երևի դեռ գլխի չեք ընկել: Բանն այն է, որ մեր հինգ հոգուց երեքիս խնդիրն հենց այդքանն է եղել, որ հակառակորդի ուշադրությունը մեր կողմը գրավենք, որպեսզի Զալոյանն ու Դրաչը անխափանորեն անցնեն հակառակորդի դիրքերը: Ամեն ինչ ստացվել էր այնպես, ինչպես նախատեսված է եղել, և Զալոյանն ու Դրաչն արդեն թշնամու թիկունքում էին:

* * *

Նրանց «Թռչնակներ» մականունն էին տվել:

Նույնիսկ գնդապետը երբ ամեն անգամ հանդիպում էր Զալոյանին ու Դրաչին, ասում էր.



— Հը, թռչնակներ, ինչպե՞ս են գործերը գնում:

Թե ով և երբ էր այդպիսի մականուն տվել նրանց, այդ հաղթանդամներին, որոնք ամենից քիչ հենց թռչնակների էին նման: Ըստ երևույթին այն օրվանից, երբ մեկն ու մեկը ռուսերեն էր թարգմանել Զալոյանի անունը, որ Սոխակ էր: Դե Դրաչն էլ հո թռչուն է ու թռչուն:[1]

Բացի այդ՝ նրանք շատ մտերիմ ընկերներ էին, թեև Դրաչը Սոխակ Զալոյանից երկու անգամ մեծ էր: Նա հենց հոր նման էլ վարվում էր Սոխակի հետ, նրան սովորեցնում էր, թե ինչպես պիտի մարտում իրեն պահի, հատկապես հետախուզության ժամանակ և միշտ աչքը վրան էր պահում: Երբ գիշերում էին գետնափոր տնակում կամ բաց դաշտում, Իլարիոն Դրաչը միշտ ծածկում էր անհանգիստ քնող Սոխակին:

Մի խոսքով շատ մտերիմ էին նրանք: Եվ երբ հրամանատարը որևէ հանձնարարություն էր տալիս, նրանց միշտ իրար հետ էր ուղարկում: Եվ ահա Դրաչն ու Սոխակը թշնամու թիկունքում էին:

* * *

«Թռչնակները» նստած խրամատի հատակին, պաքսիմատ էին ուտում և սպասում: Արդեն չորս օր էր, նրանք թշնամու թիկունքում էին: Շատ տեղեկություններ էին հավաքել հակառակորդի մասին, հարկավոր էր ետ դառնալ, բայց դեռ գոհ չէին իրենց արածից, ուզում էին «լեզու» տանել, կենդանի գերմանացի, որ ամեն ինչ մանրամասն պատմի: Եվ նստած խրամատի հատակին, նրանք հարմար առիթ էին փնտրում: «Ճաշը» արդեն վաղուց էին վեր. ցրել: Եվ երկուսն էլ իրար հպված նիրհում էին: Չորս օր էր, աչք չէին փակել: Հանկարծ հեռվից ձիերի դոփյուն և սայլի անիվների ձայն լսվեց: Դրաչը խրամատի եզրին քողարկման համար դրած չոր խոտերի արանքից նայեց և տեսավ, որ առաջավոր գծից իրենց կողմն է գալիս մի գերմանական դաշտային խոհանոց: Գերմանացի սայլապանը՝ մի կարմրաշեկ, պեպենոտ մարդ, կիսաթեք նստած, ինչ-որ մեկի հետ զրուցում էր: Ինչպես երևում է, նա մենակ չէր, բայց ինչ էլ որ լիներ, առիթը չէր կարելի բաց թողնել:

Զալոյանն ու Դրաչը դուրս եկան խրամատից և հանգիստ գնացին գերմանացիներին ընդառաջ: Կաթսայի կողքին նստածը, որ զրուցում էր սայլապանի հետ, մի ցածրահասակ սպա էր: Ըստ երևույթին առաջավոր գծից թիկունք էր գնում և օգտվելով առիթից, նստել էր խոհանոցի վրա:

Նկատելով իրենց կողմը եկող օբեր-լեյտենանտին ու եֆրեյտորին, նրանք դրա մեջ ոչ մի անբնական բան չտեսան: Դե առաջավոր գիծ էին գնում՝ ինչ կա որ: «Երևի լրացում է», — գուցե մտածեցին նրանք:

Երբ հավասարվեցին, սայլապանը ձիերին կանգնեցրեց և ցած թռչելով, ամբողջ հասակով մեկ ձգվեց ու սկսեց գերմաներեն ինչ-որ բան ասել, բայց նրան ոչ ոք չհասկացավ:

Մնացածն այնքան արագ կատարվեց, որ սպան այդպես էլ չհասցրեց սայլից ցած թռչել: Մեր «թռչնակները» նրա ձեռքն ու ոտը կապեցին, բերանը թաշկինակ խոթելով, մտցրեցին դաշտային խոհանոցի դատարկ կաթսան: Իսկ սայլապանը, որ գլխի էր ընկել արդեն և ուզում էր ավտոմատից կրակել, դաշունահար եղավ:

[1] Դրաչ — սերմնաղուտ

Դրաչը նստեց սայլապանի տեղը, իսկ Զալոյանը կաթսայի վրա։ Ձիերը խրտնելով ծառս եղան ու սլացան դեպի առաջավոր գիծ, իսկ Դրաչը հանգստացնելու փոխարեն դաշույնի ծայրով ծակոտելով ձիերի գավակները, ավելի էր կատաղեցնում նրանց։

* * *

Թե գերմանացիները, թե մերոնք սկզբում չհասկացան, ինչ է տեղի ունենում։ Մայրամուտի շողերի տակ ձյունը վարդագույն էր դարձել։ Հորիզոնը բռնկվել էր ձմեռային վերջալույսի նուրբ գույներով։ Հանկարծ երկնքի ֆոնի վրա երևացին դաշտային խոհանոցին լծված երկու հսկայական ձիեր։ Խրխնջալով, փնչալով ու ծառս լինելով, ձյունափոշու հսկայական ամպեր բարձրացնելով, նրանք մի փոքր կորությամբ սլանում էին դեպի սովետական դիրքերը։ Կատաղած ձիերի բաշերն ու պոչերը կարծես կրակի հրեղեն լեզուներ լինեին, իսկ նրանց շուրջը կայծկլտում էին ձյունափոշու ոսկեղեն՝ հատիկները։ Դրաչն այնպես էր ցույց տալիս, թե ուզում է ձիերին ետ դարձնել, բայց չի կարողանում. իրականում նա մի կերպ իրեն պահելով լծափայտի վրա՝ դաշույնի ծայրով ծակում էր նրանց արդեն արյունլվա եղած գավակները։ Զալոյանն հազիվ էր իրեն պահում կաթսայի վրա։ Այսպես, ձյան փոշու ամպեր բարձրացնելով, կարմրաշեկ ձիերը սլանում էին առաջ, իսկ երբ վերջապես գերմանացիները սկսեցին կրակել, նրանք ավելի կատաղեցին և առաջ սլանալով անցան մեր առաջավոր գիծն ու մտան անտառ։

Մերոնք սկզբում չէին կրակում, որովհետև ձիերը քանի գնում, մոտենում էին, միշտ էլ կարելի կլիներ կրակել։ Նրանք սպասում էին, թե ինչ է լինելու։ Իսկ երբ բոլորովին մոտեցան մերոնց, Դրաչն իր բարձր ձայնով բղավեց.

— Եղբայրնե՛ր, մի՛ կրակեք, յուրայիննե՛ր ենք՝ յուրայիննե՛ր...

* * *

Քիչ հետո սոճու ջահել անտառում, ուր վերջապես Դրաչը կարողացավ կանգնեցնել կատաղած ձիերին, հավաքվեց մեր ամբողջ դասակը։ Գետնատնից դուրս եկավ գնդապետը և մոտենալով գերմանական դաշտային խոհանոցին, իրար կողքի կանգնած կարմրած ու հեզ հսկաներին դիմելով, հարցրեց.

— Հը՞, «թռչնակնե՛ր», տեսնեմ ի՞նչ ճաշ եք եփել, ի՞նչ եք տապակել։

Սոխակը կարմրելով պատասխանեց.

— Լեզու, ընկեր գնդապետ։

Դրաչը բաց արեց կաթսայի բերանը։ Սկզբում ոչ ոք չերևաց, բայց քիչ հետո երևացին նախ մի ճավարոտ գլուխ և ապա գերմանացու ամբողջովին ճաշոտված մարմինը։

Գնդապետը ծիծաղելով ասաց.

— Սա հո շիլա է և ոչ թե լեզու։

Եվ բոլորն ուրախ ծիծաղեցին։








Ահա, կարծես պայծառ ու գեղեցիկ երազի միջից լսվում է արտույտի երգը: Երկնքի ու երկրի մեջ ճախրում է արտույտը և տարածում իր քաղցր ձայնը...

Ի՞նչ անուշ է այդ երգը... կարծես մանկությունն է իր կարկաչուն ձայնով խոսում այդ երգի միջից...

Մեծ կոմպոզիտոր Միխայիլ Գլինկան է հյուսել այդ երգը: Բայց միայն ա՞յդ երգը... Նա հյուսել է ուրիշ հիանալի երգեր էլ, որոնք այնքան խորը և լավ են արտահայտում ռուս մարդու հոգին, նրա խոհերն ու ապրումները: Միխայիլ Գլինկան ռուս ժողովրդի մեծ կոմպոզիտորն է:

Հարյուր տարի է անցել կոմպոզիտորի մահվանից: Բայց նրա երգի վրա չի նստում ժամանակի ժանգը, ավելի է թարմանում: Այսօր ավելի վեհ ու հարազատ են հնչում «Իվան Սուսանինը» և «Ռուսլան և Լյուդմիլա» հոյակապ օպերաները, «Կամարինսկայա»», «Վալս-ֆանտազիան», «Արագոնյան խոտան» և այլ հրաշալի գործեր:

Գլինկան ազնվացրել է մարդկանց հոգին, երգել է խիզախությունը, բարձրացրել ժողովրդի հերոսական ավյունը, նրան մղել հայրենասիրական վեհ սխրանքների:

Գլինկայի երկերը դարձել են ոչ միայն ռուս ժողովրդի, այլև բոլոր ժողովուրդների սիրած ստեղծագործությունները, կատարվում են աշխարհի շատ բեմերում և համերգային դահլիճներում:

Մեծ մարդիկ չեն մեռնում, նրանք անմահ են ժողովրդի սրտում: Այդպիսի մարդ էր Գլինկան:

Ռ. Ղարիբյան

# ՋՅԱՆ ՓԱԹԻԼԸ

*Ճերմակ թևերն օդում բացած,*
*Իջավ ձյունի փաթիլը ցած.*
*Փոքրիկ Սոսը նայեց երկար,*
*Ասաց.— ա՜յ քեզ սիրուն ճկա՜ր...*
*Փաթիլը թե.— Ճկար չեմ ես,*
*Լսիր, պատմեմ իմ կյանքը քեզ:*
*Ինձ ասում են ձյունի փաթիլ.*
*Ջուր էի ես, ջրի կաթիլ:*
*Արևն ելավ ու ծիծաղեց.*
*Իմ այտերից համբույր քաղեց.*
*Ասաց.— ջրիկ, քեզ ի՞նչ անեմ,*
*Նստիր շողիս՝ երկինք տանեմ...*
*Մեկ էլ տեսա՝ առած թևեր,*
*Թեթև - թեթև ելնում եմ վեր...*
*Թռան օրեր վառ ու նախշուն,*
*Ամառն անցավ, եկավ աշուն.*
*Շատ մնացի օդում, թե քիչ,*
*Ինչպե՞ս հիշեմ ես ամեն ինչ...*
*Ու մի օր էլ խոսեցի ես,*
*— Կարոտել եմ երկրին այնպես...*
*Հենց ասացի, մեկ էլ՝ հանկարծ*
*Ցուրտ հյուսիսից թռած եկած՝*
*Սառը քամին շոյեց դեմքս.*
*— Արի,— ասաց,— տանեմ ես քեզ...*
*Շուտ փոխեցի շնորհք ու ձև,*
*Դարձա փաթիլ փոքրիկ, թեթև,*
*Մնաս բարով ասի ամպին*
*Ու նստեցի քամու թամբին...*
*Քամու ձին էլ՝ անսանձ, անձև*
*Սլանում էր թեթև — թեթև...*
*Բայց մի տեսակ մուժ բարձրացավ,*
*Մենք կորցրինք օդում ուղին,*
*Քամին իր ձին քշեց անցավ,*
*Ես ոտք դրի փափուկ հողին:*
*Իմ կարճ կյանքի պատմությունը*
*Ահա այս էր, սիրուն տղա.*
*Քեզ կանչում է փափուկ ձյունը,*
*Դե՛, սահնակդ դուրս բեր, խաղա:*

# ՈՍԿԻ ՁԵՌՔԵՐ





Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

Իմ գործը պատմելն է. ես կպատմեմ, իսկ դուք կուզեք հավատացեք, կուզեք մի հավատաք. միայն թե ինչ-որ կպատմեմ՝ զուտ ճշմարտություն է։

Նույնիսկ ինքս՝ անձամբ ճանաչում եմ այս պատմության հերոսին, որի անունը Արուս է։ Նա ապրում է Երևանին մոտիկ գյուղերից մեկում և այս տարի պետք է ավարտի միջնակարգ դպրոցը. իսկ այն, ինչ ես պետք է պատմեմ, նրա հետ պատահել է վաղուց, երբ նա դեռ պիոներ էր ու սովորում էր հինգերորդ դասարանում։

Զարմանալի աղջիկ էր այդ Արուսը, այո, նա շատ զարմանալի աղջիկ էր, բայց ոչ ոք չգիտեր այդ մասին։

Թե՛ ծնողները, թե՛ հարևանները ու ընկերները նրա մասին միայն մի բան գիտեին, որ նա ծույլ, փնթի, անընդունակ մի աղջիկ է, և բոլորովին անտարբեր՝ իր ընկերների և ծնողների, հարևանների և ուսուցիչների, մի խոսքով բոլոր մարդկանց հանդեպ։

Առավոտյան ամբողջ ընտանիքով հազիվ-հազ էին կարողանում ստիպել, որ Արուսը վեր կենա անկողնուց, լվացվի, հագնվի ու դպրոցից չուշանա։ Հազիվ էին կարողանում ստիպել, որ նա մի կերպ դասերը պատրաստի։

Իսկ հետո՞ էլ

— Արուս ջան, ես անց եմ գնում, — պատմում էր, խնդրում էր մայրը։ — Դու կարտոֆիլ կճպի, մինչև գամ պատրաստի, գամ՝ ճաշը վրան դնեմ։

Կամ թե՝

— Արուս ջան, հավերին կուտ ու ջուր տուր։

Ո՛րտեղ... մայրը կգար, կտեսներ, որ Արուսը ընդամենը մի կամ երկու կարտոֆիլ է կճպել ու դունչը ձեռքերին հենած, նայում է լուսամուտից դուրս, կամ թե դռանը նստած, ծույլ-ծույլ նայում է սոված ու ծարավ հավերին։

Երբ դպրոցում նրան հանձնարարում էին այցելել հիվանդ դասընկերոջն ու նրան բացատրել օրվա դասերը, Արուսը չէր անում։

Մեկ, երկու, երեք... չէ, մարդիկ ինչ-որ սպասում են, նրան են հավատում։ Բոլորը կամաց-կամաց, ձեռք քաշեցին նրանից, իր արարքներով նա նեղացրեց ու հիասթափեցրեց ծնողներին էլ, ընկերներին էլ, դասատուներին էլ...

Բայց հիշո՞ւմ եք, ես ձեզ ասացի, որ Արուսը շատ զարմանալի աղջիկ է։ Իսկ իմ պատմածների մեջ զարմանալու դեռ ոչինչ չկա։ Ամենքի նման դուք էլ կասեք. «Սովորական մի ծույլիկ է եղել այդ Արուսը, էլի»։

Բայց, հարկավոր չի շտապել։ Սպասեցեք, ամեն ինչ հերթով կիմանաք։ Այո, ես բոլորովին մոռացա ասել, որ Արուսը միայն մի բան էր սիրում՝ հեքիաթներ կարդալ, և չէր ծուլանում կարդալուց։ Կարդում էր, կարդում, իսկ հետո սկսում էր երազել... Ա՜խ, ես էլ ունենայի մի այնպիսի մատանի, որ շուռ տայի ու կասեի, թող բոլոր դասերս պատրաստված լինեն... կամ թե, թող գամբ ավլած, սրբած լինի։ Կամ մի կախարդական սփռոց ունենայի, նվագեի, զանան-մանանները դուրս գային, հարցնեին՝ ի՞նչ ես ուզում, Արուս, ասեի՝ ուզում եմ, որ սոխի մարգերը մաքուր քաղհանեք... Կամ թե մի տիկնիկ ունենայի, երբ ամենքը գիշերը քնեին, վեր կենար տան բոլոր գործերը աներ։

Ահա, այդպիսի բաներ էր երազում Արուսը և պետք է ասել, որ այնքան երազեց-այնքան երազեց, որ շուտով սկսեց ինքն իր երազներին հավատալ։

Մի սիրած տեղ ուներ Արուսը։ Իրենց տանից քիչ այն կողմ գտնվող առուն, որի եզրին ուռենիներ էին աճում։ Ամռան շոգ օրերին պառկում էր այդ ուռենիների ստվերի տակ և երազում։ Երազում էր, հավատում իր երազանքներին և սպասում, որ ուր որ է, իր հետ մի հրաշք պիտի պատահի, մի այնպիսի հրաշք, որ սովորաբար միայն հեքիաթներում է պատահում։ Բայց անցնում էին օրերը, հրաշքը չէր պատահում։ Երկար ժամանակ անօգուտ իզուր սպասելուց Արուսն սկսեց ձանձրանալ... Նրա սև աչքերն ասես ավելի սևացան։

«Ի՞նչ անեմ, մտածում էր նա, ի՞նչ անեմ. ես ուզում եմ լավը դառնալ, ես ուզում եմ շատ-շատ լավ բաներ անել մարդկանց, բայց ինձ հետ ոչ մի հրաշք չի պատահում...

Հիմա երևի համոզվեցի՞ք, որ Արուսն, իրոք, շատ զարմանալի մի աղջիկ էր։

Եվ ահա մի անգամ նրա հետ պատահեց մի... բայց սպասեցեք, ամեն ինչ հերթով կարգով։

Եվ ահա մի անգամ Արուսը պառկած էր իր սիրած տեղում, մեկ էլ տեսավ, ճանապարհով

գալիս է մի ծերունի։ Ծերունին ինչ-որ կապոց ուներ ձեռքին, որ հազիվ էր բերում։ Մանավանդ, որ շոգ էր, ամառ։ Ծերուկն ամբողջովին քրտինքի մեջ կորել էր։ Արուսը երբ նայեց ծերունուն, առաջին վայրկյանին մտածեց վեր կենալ, օգնել նրան. իսկ հետո փոշմանեց։ «Ո՞վ պիտի էս շոգին մեկ էլ վեր կենա տեղից,— մտածեց նա և բոլոր ծույլ մարդկանց նման սկսեց իր ծուլությունն արդարացնել։— Էսքան տեղ որ կարողացել է բերել, ուրեմն էլի կարող է տանել։ Համ էլ սա մեր գյուղից չի երևում. սա բոլորովին անծանոթ ծերուկ է»։

Իսկ ծերուկը՝ կապոցը ձեռքին, տնքտնքալով, քրտինքի մեջ կորած, մոտենում էր ու մոտենում։ Մոտեցավ, մոտեցավ, երբ բոլորովին հավասարվեց Արուսին, դուրս եկավ ճանապարհից և հայացքը հառած պառկած տեղից ուշադրությամբ իրեն նայող աղջկան, նստեց նրա կողքին։

Արուսը հետաքրքրությամբ, առանց պառկած տեղից շարժվելու, նայում էր ծերուկին։ Արուսին հետաքրքրում էր ծերունու հատկապես մորուքը։ Դա մի մեծ, առատ, բոլորովին սպիտակ մորուք էր։ «Ա՜յ,— մտածեց Արուսը,— հեքիաթների բարի կախարդներն այդպիսի մորուքներ են ունենում»։ ...Եվ հանկարծ... Արուսի սիրտը հուզմունքից թպրտաց... իսկ եթե...

Իսկ այդ ժամանակ ծերուկը գլխարկը հանեց մեծ, կապույտ թաշկինակով սրբեց քրտինքը և բարի աչքերով նայեց աղջկան։

«Էդ է որ կա»,— մտածեց Արուսն ու պառկած տեղից վեր թռավ, նստեց։

— Դու ինչի՞ մասին ես մտածում, աղջիկս,— հարցրեց ծերուկը։

Արուսը շփոթմունքից չկարողացավ ոչ մի խոսք ասել։ Նա միայն մտածում էր. «Ինչպե՞ս ես միանգամից գլխի չընկա, որ այս ծերուկը բարի կախարդ է»։



*Չե՞ս կարող ասել, թե ինչի՞ մասին ես մտածում,—ասաց ծերուկը և ժպտաց:*

*Եվ այստեղ Արուսն իր բոլոր երազանքների ու վշտերի մասին պատմեց ծերուկին: Պատմեց-վերջացրեց, ապա հարցրեց.*

*—Պապի, դու կախարդ չե՞ս...*

*Ծերունին մի պահ մտքի մեջ ընկավ, ապա խոսեց.*

*—Դե ինչպե՞ս ասեմ. և՛ այո, և՛ ոչ...—Ծերուկը մի փոքր էլ լռեց, ապա ասաց.*

*—Ես հեքիաթների թագավորն եմ...*

*Այստեղ Արուսը հուզմունքից նույնիսկ սկսեց դողդողալ...*

*—Բայց...բայց,—թոթովեց նա,—հիմա թագավորներ չեն լինում...*

*—Հեքիաթների թագավոր լինում է, ես եմ,—պատասխանեց ծերուկը:*

*Մի պահ լռություն տիրեց:*

*—Պապի,—խնդրեց Արուսը, որ խելքն արդեն գլուխն էր եկել,—պապի, շատ եմ խնդրում, ինձ մի հատ կախարդական մատանի տուր, մեն մի հատիկ, շատ եմ խնդրում:*

*Ծերուկը մտքի մեջ ընկավ, նայեց իր ձեռքի կապոցին, նայեց, նայեց, հետո նորից նայեց Արուսին, հետո նորից մտածեց ու ասաց.*

*—Ոչ, ես քեզ կախարդական մատանի չեմ տա, ես իմ պալատից դուրս գալիս յոթ հատ կախարդական մատանի էի վերցրել ու բոլոր յոթն էլ բաժանեցի...*

*Նա մի քիչ էլ մտածեց, ապա ասաց.*

*—Ես քեզ մի ուրիշ բան կնվիրեմ...*

*Արուսի սիրտն ուրախությունից թնդաց.*

*—Ես քո ձեռքերը ոսկյա կդարձնեմ...*

*Մի պահ լռություն տիրեց, որի ժամանակ Արուսը լսում էր իր սրտի զարկերի ձայնը:*

*—Բայց,—շարունակեց հեքիաթների թագավորը,—դու միայն քառասուն շաբաթ, քառասուն օր, քառասուն ժամ, քառասուն րոպե, քառասուն վայրկյան հետո կտեսնես, որ քո ձեռքերը ոսկուց են: Իսկ հիմա, այդ ամենը կտեսնեն, բայց այնքան կզարմանան, որ այդ մասին ոչինչ չեն ասի, իսկ դու էլ, երբ պատահի, որ որևէ մեկը տեսնի և այդ մասին քեզ ասի, դու անմիջապես պիտի ասես. «Ի՞նչ եք ասում, ի՞նչ ոսկյա, իմ ձեռքերը սովորական ձեռքեր են»... Բայց որպեսզի քո ձեռքերը միշտ ոսկյա մնան, դու նրանց չպետք է երկար ժամանակ անշարժ պահես: Երկար կարելի է չշարժել միայն քնած ժամանակ և դաս սովորելիս: Ուրիշ ժամանակ երկար անշարժ մնալուց, նրանք էլի կդառնան սովորական ձեռքեր: Եթե իմ ասածները անես, ապա քառասուն շաբաթ, քառասուն օր, քառասուն ժամ, քառասուն րոպե, քառասուն վայրկյան անցնելուց հետո, դու արդեն ինքդ էլ կտեսնես, որ քո ձեռքերը ոսկուց են: Ես վերջացրի իմ խոսքը, քո ձեռքերը հիմա ոսկուց են,—ասաց ծերուկը, ապա իր կապոցը վերցնելով, վեր կացավ, ճամփան շարունակեց:*

*Արուսն էլ վեր կացավ տեղից, նայեց ծերուկի ետևից: Ծերունին դեռ չէր հասել ճանապարհի ոլորապտույտը, երբ փոշու ամպ բարձրացնելով մի ավտոմեքենա եկավ դիմացից: Փոշու ամպը ծերունուն բոլորովին ծածկեց Արուսի տեսողությունից, իսկ երբ փոշին նստեց, ծերունին արդեն անհետացել էր...*

*Արուսը սթափվեց: «Հիմա ես ոսկե ձեռքեր ունեմ»,—մտածեց նա, ապա հիշելով ծերունու ասածը, սկսեց ձեռքերն ու մատները եռանդով շարժել: Շարժեց այդպես մի րոպե, երկու րոպե, հինգ րոպե, բայց վերջապես ձանձրացավ: Իրոք որ ձանձրալի էր հենց այդպես՝ անընդհատ ձեռքերն ու մատները շարժելը, ոչ միայն ձանձրալի, այլև ծիծաղելի էր, որովհետև Արուսը տեսավ, թե ինչպես գերանդին ուսին մի գյուղացի, որ արագ անցնում էր ճանապարհով, իրեն նայեց մի տեսակ զարմացած հայացքով: Այստեղ Արուսը հիշեց, որ առավոտյան դաշտ գնալուց առաջ, մայրն իրեն պատվիրել էր տնամերձի մարգերը քաղհանել: Դրանից էլ լավ ի՞նչ՝ մատներն ու ձեռքերը շարժելու:*

*...Արուսը քիչ հետո եռանդով մարգերն էր քաղհանում:*

*Մի կես ժամ քաղհանեց, մի քիչ հանգստացավ, էլի քաղհանեց, էլի հանգստացավ, էլի քաղհանեց, գնաց տուն, լվացվեց, հաց կերավ, փախց-եկավ, նորից սկսեց քաղհանել: Նա այնքան էր կլանված աշխատանքով, որ չնկատեց, թե ինչպես մայրը, որ վերադարձել էր դաշտից, կանգնեց իր ետևում ու սկսեց նայել իր աշխատանքին: Նայեց, նայեց զարմացած, ապա ասաց.*

*—Արուս, աղջիկս, քո ձեռքերը իսկական ոսկուց են...*

*Արուսը սթափվեց, նայեց տեսավ, որ մայրը զարմացած իրեն է նայում, հիշեց ծերունու պատվերները և ասաց.*

*—Չէ, ի՞նչ ես ասում, մայրիկ, ի՞նչ ոսկուց, ինչ բան, իմ ձեռքերը սովորական ձեռքեր են:*

*Երբ քաղհանեց-վերջացրեց, հանգստացավ ու նորից գնաց մայրիկի մոտ, ասաց.*

*—Մայրիկ ջան, ինձ մի գործ տուր...*

*«Եթե երկար ժամանակ ձեռքերդ ու մատներդ անշարժ պահես, նրանք նորից սովորական կդառնան»... —հիշել էր նա ծերունու խոսքերը...*

* * *

*Է՜հ, էլ ի՞նչ շարունակեմ:*

*Ես իմ պատմությունը պատմեցի-վերջացրի: Միայն այսքան կասեմ, որ Արուսը միշտ աշխա-*



տում է, որպեսզի ծերունու բոլոր պատվերները ճշտորեն կատարի։ Արուսն արդեն տասներորդ դասարանի աշակերտուհի է, Չիրանից ամենքը, ամենքը շատ գոհ են ու մինչև հիմա էլ, երբ մեկն ու մեկը զարմանում և ասում է.

— Այս աղջիկը ոսկի ձեռքեր ունի,— Արուսը պատասխանում է.

— Ոչ մի ոսկի։ Ի՞նչ ոսկի, ինչ բան, սովորական ձեռքեր են։

Դուք ինձ խնդրում էիք մի բան պատմել, դե, ես էլ պատմեցի։ Հիմա ձեր գործն է, կուզեք հավատացեք, կուզեք չէ...

# Ծաղրանկարին

ՅՈՒ. ՍԱՐՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Այդ օրը Կառլենը Գագիկ Օհանյանի ծաղրանկարը պետք է նկարեր: Գագիկը նոր աշակերտ էր: Սկզբում նա բոլոր առարկաներից էլ լավ էր սովորում, լավ էլ պատասխանում էր: Միջդասական ժողովներում նրան գովում էին, նույնիսկ ասացին, թե լուսանկարը կփակցնեն գերազանցիկների տախտակին: Այդ բոլորը ուսումնական տարվա սկզբին էր: Հետո Գագիկն սկսեց դպրոց գալ՝ դասերը չսովորած: Պատմության դասատուն մի քանի անգամ դաս հարցրեց նրան, և չեղավ մի օր, որ նա ամեն ինչ իրար չխառնի: Մի անգամ նա ասաց, թե Քեոպսի բուրգը Հնդկաստանում է կառուցված, մյուս անգամ, թե բազմաստվածությունն առաջացել է Հունաստանում, իսկ Զևսը եգիպտացիների աստվածն է: Թվաբանության դասին նա նույնիսկ չկարողացավ ասել, թե որ թվերն են բաժանվում երկուսի և ինչ հատկանիշներ ունեն դրանք:

Կառլենը նստեց աթոռին, ոտքը ծալելով տակը. նկարելիս նա միշտ այդպես է նստում: Սեղանին մաքուր թուղթ փռեց, դասավորեց մատիտներն ու ներկերը և մտքի մեջ ընկավ: Ինչպե՞ս նկարի Գագիկին, որ լավ դուրս գա: Գուցե նկարի մեծ գլխով, որի մեջ գրկախառնված կանգնած են եգիպտական Զևսը, հնդկական Բուրգը և հունական Չինը: Գուցե լավ կլինի, եթե Գագիկին պատկերի այս ձևով. նա կռվի է բռնվել «7» թվանշանի հետ և փորձում է բաժանել նրան «2»-ի և «5»-ի: Կամ գուցե նրան նկարի գրատախտակի մոտ, երբ նա բոլոր հարցերին պատասխանում է՝ «Չգիտեմ, չգիտեմ, չգիտեմ»:

Բայց ծաղրանկարի այս բոլոր տարբերակները Կառլենը չհավանեց: Նա ուզում էր այնպիսի արտասովոր բան անել, որ, ինչպես անցյալ անգամ, դպրոցում բոլորը գովեին իրեն: Գուցե նկարել...

Նկարի մի նոր տարբերակ հորինելով, Կառլենը շատ ուրախացավ ու մատիտով [illegible] քաշեց ուրվագծերը: Հետո սկսեց խնամքով ներկել:

Նա վերջացրեց, հենեց պատին, մի քիչ հեռացավ ու աչքերը կկոցելով նայեց: Գագիկը շատ ծիծաղելի էր դուրս եկել, և նույնիսկ Կառլենը վիրավորված զգաց նրա փոխարեն: Ախր, Գագիկն այնքան էլ վատը չէ: Կառլենը մինչև հիմա հիշում է, թե ինչպես մի անգամ հարևան դպրոցից մի տղա Կառլենին վատ խոսք ասաց, և թե ինչպես Գագիկը նրան պաշտպանեց: Եվ մի՞թե միայն այս դեպքը կարելի է հիշել...

Պատի թերթի թարմ համարի առաջ մեծ բազմություն էր հավաքվել. այդտեղ էին ոչ միայն հինգերորդ «բ» դասարանի, այլև մյուս դասարանների տղաներն ու աղջիկները:

Նկարում Գագիկը պատկերված էր գետի ափին կանգնած: Գետի ալիքների վրայով լողում էին «Ն ե ղ ո ս» տառերը: Գագիկը շատ նման էր ստացվել. ակնոցները քթին, վանդակավոր կովբոյկան հագին: Նույնիսկ մազաբաժան ուղիղ գիծը կար: Միայն թե նկարի մեջ Գագիկի ականջները ծիծաղելի կերպով մեծ էին, իսկ քիթը՝ ծուռ: Գագիկի կողքին մազոտ գլխով բարձրահասակ մի մարդ էր կանգնած: Նրա բերանից դուրս էր ձգվել մի մակագրություն՝ «Ես Զևսն եմ: Մի՞թե ես այստեղ եղել եմ»: Նրանից ոչ հեռու մի լեռ կար: Լեռան վրա գրված էր «Օլիմպոս», իսկ գագաթին նստած էր քարե մի մարդ, աչքերը փակ: Նրա և Գագիկի արանքում կար մի մակագրություն. «Իսկ ինչո՞ւ ինձ՝ Բուդդայիս, դու նստեցրել ես այստեղ»: Գագիկի հետևը մի մեծ «7» էր կանգնած և երկու փոքր թվանշան՝ «2» և «5»: Դրանցից ամեն մեկն ուներ գլուխ, ոտքեր ու ձեռքեր: Յոթ թվանշանը քաշում էր Գագիկի շալվարից ու ցույց տալով երկուսին ու հինգին, հարցնում. «Ես ի՞նչ անեմ, երբ սրանց վրա չեմ բաժանվում»:

Հավաքվածներն այնպես էին քրքջում, որ միջանցքը թնդում էր: Լսվում էին ձայներ.

— Տես, տես, ինչքան նման է:

— Ապրես, Կառլեն: [illegible]

Կառլենը, ձեռքերը գրպանները դրած, կանգնել էր մի կողմ: Նա աշխատում էր իր դեմքին անտարբեր արտահայտություն տալ:

Ինչ-որ մեկը բարձրաձայն հարցրեց.

— Իսկ ո՞րտեղ է Գագիկը:

Սկսեցին փնտրել Գագիկին: Միջանցքում չկար: Վազեցին դասարան. Գագիկն այնտեղ էր: Նա նըստած էր վերջին նստարանին, գլուխը ձեռքերին դրած: Նրա հագին վանդակավոր կովբոյկա կար:

Սևակը, որը ամենից աղմկարարն էր դասարանում և բոլորից ցածրահասակը, վազեց առաջ, բռնեց Գագիկի թևքից ու սկսեց քաշքշել:

— Վեր կաց, վեր կաց... Արի, մի հիացիր քո գեղեցիկ դեմքով:

Գագիկը չշարժվեց տեղից: Նա միայն բարձրացրեց գլուխը, նայեց Սևակին, նայեց մյուս տղաներին: Ակնոցների ապակիների միջից երևում էին նրա աչքերը, որո՛նք թաց էին ու տխուր, շատ տխուր:

Բայց տղաները չնկատեցին այդ: Գագիկի զույգ ձեռքից բռնելով, նրանք քաշեցին նրան մինչև դուռը: Գագիկը գրեթե չէր դիմադրում: Միայն մի անգամ նա փորձեց ազատել ձեռքերը և կամացուկ խնդրեց.

— Թողեք:

Տղաներն ուշադրություն չդարձրին: Նրանք ուշադրություն չդարձրին նաև Կարինեի վրա, որն ուզում էր կանգնեցնել նրանց.

— Ի՞նչ եք անում, չեք ամաչո՞ւմ... Այդ դուք Գագիկի՞ հետ եք այդպես վարվում...

Բայց տղաները, որ արդեն դուրս էին թռել միջանցք, Գագիկին հրելով հասցրին պատի թերթի մոտ: Գագիկը նայեց թերթին ու աչքերը խոնարհեց: Նրա շուրջն անմիջապես աղմկեցին:

— Տեսա՞ր, թե ուր հասար: Հիմա լավ կիմանաս, թե Զևսը որտեղ է, Բուդդան՝ որտեղ:

— Տրա-լա-լա, տրա-լա-լա... Ակնոցներդ բռնիր, չընկնեն,—բղավեց բարձր դասարանցի մի լողլող և այնպես շպացրեց Գագիկի ծոծրակին, որ նրա ակնոցները վեր թռան: Թնդաց միահամուռ ծիծաղը:

Զանգը տվեց: Բոլորն սկսեցին ցրվել, ծուլորեն դասարան գնաց նաև Գագիկը:

Դասի ժամանակ էլ նրան հանգիստ չթողին: Երբ ուսուցիչը դարձավ դեպի գրատախտակը, Գագիկի նստարանին մի երկտող ընկավ: Նա բաց արեց թուղթը: Թղթի վրա նկարված էր մազոտ մի մարդ, որը Զևսի նման էր, բայց չգիտես ինչու՝ ակնոցներով: Նկարի տակ գրված էր. «Ողջույն Գագիկին եգիպտական Զևսից»:

Հետո Սևակը, որ նստած էր առաջին նստարանին, ինչ-որ մի սրամտություն արեց: Դասարանով մեկ անցավ թեթև մի ծիծաղ, շատերը շուռ եկան ու նայեցին Գագիկին:

Ծիծաղը, չար կատակները, ծաղր ու ծանակը շարունակվեցին բոլոր դասամիջոցներին ու դասերին:

Գագիկը տուն էր գնում Կարինեի հետ, նրանք ապրում են միևնույն շենքում: Ամբողջ ճանապարհին Կարինեն ոչ մի բառ չարտասանեց: Լուռ էր նաև Գագիկը: Կարինեենց բնակարանի դռանը, սանդուղքի հարթակում նրանք կանգ առան:

— Դու ինչո՞ւ լուռ մնացիր, Գագիկ, ինչո՞ւ ոչինչ չասացիր:

— Ինքս էլ չգիտեմ,—խոր հոգոց հանելով, պատասխանեց նա, կտրուկ շրջվեց և շտապ քայլերով բարձրացավ իրենց տուն:

Մյուս օրը, հենց առաջին դասին բոլորը նկատեցին Գագիկի բացակայությունը: Կարինեն մենակ էր նստած: Դասամիջոցին Սևակը հարցրեց նրան.

— Հը, ո՞ւր է ընկերդ:

Կարինեն ոչինչ չասաց, դեմքը թթվեցրեց և շուռ գալով, հեռացավ: Իսկ մեծ դասամիջոցին ջոկատի խորհրդի նախագահ Լուսիկ Սիմոնյանը երկար կանգնեց լուսամուտի մոտ ու ինչ-որ բանի մասին փսփսաց ավագ ջոկատավար Ռուբեն Աբրահամյանի հետ:

Դասերից հետո Լուսիկը հայտարարեց.

— Ոչ ոք տուն չգնա, մեզ մոտ է գալու ավագ ջոկատավարը:



— Մենք պետք է խոսենք Գագիկ Օհանյանի մասին,—դասարան մտնելով անմիջապես սկսեց Աբրահամյանը...

— Կարելի՞ է,—ձեռքը բարձրացրեց Կարինեն:

— Խոսիր:

Կարինեն ոտքի կանգնեց:

— Ի՞նչ գիտեք Գագիկի մասին դուք, ընկերներ,—հարցրեց նա հայացքով զննելով դասարանը, հենց ինքն էլ պատասխանեց.—ոչինչ չգիտեք: Չէ՞ որ նա նոր աշակերտ է մեզ մոտ և ոչ ոք չի հետաքրքրվել, թե ինչո՞ւ է նա վատ սովորում: Իսկ ես ու նա հարևաններ ենք: Ես նրա մասին ամեն բան գիտեմ և հիմա կպատմեմ...

Աշակերտները լռեցին: Բոլորն էլ գիտեին, որ Գագիկն առաջ ապրում էր Բաքվում: Կարինեն պատմեց նաև, որ Գագիկն այստեղ է եկել հոր մահից հետո: Գագիկի մայրը մեքենագրուհի է և ստիպված է երբեմն երեկոներն էլ աշխատել: Բայց չէ՞ որ Գագիկը երկու փոքր քույր էլ ունի: Բա ո՞վ պիտի օգնի մորը, նայի քույրիկներին: Ո՞վ պիտի հետևի, որ նրանք դասերը պատրաստեն: Իհարկե, Գագիկը...

Կարինեն լռեց, խորը շունչ քաշեց, չգիտես ինչու, պայուսակից հանեց թաշկինակն ու նորից դրեց տեղը:

— Մի տեսնեիք, թե ամեն օր ինչքան վաղ է վեր կենում Գագիկը, թե ինչպես է օգնում մորը, հասցնում մի քրոջը՝ Անյային մանկապարտեզ տանել, իսկ դասերից հետո... Դպրոցից գնում է թե չէ, սենյակն է մաքրում, ստուգում է Սեդայի դասերը... Մի՞թե հնարավոր է ամեն ինչ պատմել: Երբեմն մենք միասին ենք պարապում, և ես ուղղակի զարմանում եմ, թե ինչպես է նա ամեն ինչ հասցնում: Հապա մի հիշեցեք, թե ինչքան լավ էր սովորում առաջ: Այո, նա միայն վերջերս է սկսել վատ սովորել: Ինչո՞ւ. շատ պարզ: Փոքրիկ քույրը հիվանդացել է, և Գագիկն ուղղակի ուժասպառ է եղել դես ու դեն վազվզելով: Նրա քույրիկը ամբողջ մի ամիս հիվանդ էր: Շատ կուզենայի տեսնել, թե ի՞նչ կանեիք դուք, եթե ձեզանից որևէ մեկը նրա վիճակին հասներ... Իսկ դուք՝ Զ՛ևս, Բուդդա՛, բաժանման հատկանիշնե՛ր...

Կարինեն նստեց տեղը: Դասարանը լուռ էր: Լռությունը խզեց Կարլենը.

— Է՛հ,—հառաչեց նա,—շտապեցինք...



## ՁՄԵՌ

ԱՐՄԵՆԱԿ ՂԱԶԻՆՅԱՆ

Ճերմակ են կրկին
Դաշտ, անտառ ու լեռ,
Սուլում է քամին.
—Ձմեռ է, ձմեռ:
Քնած են հողում
Ծիլեր ու սերմեր,
Ծիտիկն է դողում.
Ձմեռ է, ձմեռ:
Լճել է առուն
Պատյանում սառցե,
Տենչում է գարուն,
Ձմեռ է, ձմեռ:
Դե, մենք էլ, եկեք,
Զվարթ մանուկներ,
Խաղանք ու երգենք.
Ձմեռ է, ձմեռ...



«Իրիկունները մութն ընկնելիս, երբ փողոցները մռայլվում են, մթան մեջ չե՞ք դիտել, թե ինչպես լապտերները վառվում են... Մթան մեջ լավ տեսնում եք ճրագը, բայց չեք տեսնում ճրագը վառողին։ Այդպես չէ՞, սիրելի մանուկներ, որ նա էլ մթան մեջ լույս անող մեկն էր։ Ինքը մնաց մթան մեջ և լույս տվեց մեզ, գիտության լույս...» — գրում է հայ մեծանուն գրողը մի նշանավոր մարդու մասին։ Բայց մի՞թե Դեմիրճյանն ինքն էլ մեր գրականության լուսատուներից մեկը չէր, որն իր լույսն ու գիտությունն էր տալիս մեզ։

Ինչքա՜ն բան է արել նա։ Շատ — շատերն են բեմի վրա տեսել նրա «Քաջ Նազարը», «Երկիր Հայրենին», նա գրել է բազմաթիվ պատմվածքներ ու վիպակներ, «Վարդանանք» պատմավեպը։

Բայց նա շատ բան է արել նաև փոքրերի համար։ 1909 թվականին Դեմիրճյանն սկսեց աշխատակցել «Հասկեր» ամսագրին։

Առաջին մանկական գործը, որ տպագրեց նա «Հասկերում», Գրիմմ եղբայրների «Պստիկ, բարի մկնիկը» հեքիաթն էր, իսկ հետո լույս տեսան «Պատի ժամացույցը», «Միտիկի հարսանիքը» ոտանավորները։ Այդ տարիներին նա գրեց նաև մի հրաշալի պատմվածք՝ «Շողիկն ու Պեծիկը», որը տեղ գտավ դպրոցական դասագրքերում։

Ո՞վ չի կարդացել Դեմիրճյանի «Պույ-պույ Մուկիկը», «Ծտապարը»։

Մեծ վարպետը իր մանկական ստեղծագործություններով սեր է արթնացնում դեպի բնությունը, հայրենի աշխարհը, կյանքը։ Նրա մանկական գործերը հագեցված են սրամտությամբ ու հումորով։

Դեմիրճյանը մեր գրական ուսուցիչներից մեկն էր, որն իր կյանքը նվիրեց հայ գրականությանն ու ժողովրդին։ Այդ պատճառով էլ մեր ժողովուրդը իր սրտում վառ կպահի նրա անմահ հիշատակը։





Դ. ԴԵՄԻՐՃՅԱՆ

— Խեղճ ծիտիկներ, պալտո չունեք,
Դուրսն եք ապրում ցուրտ ձմեռ,
Փողոցներում շատ մրսում եք,
Դողում են ձեր ոտիկները։

— Ո՞վ է ասում պալտո չունենք,
Մեր փետուրներն ինչ են հապա,
Քեֆիդ մարիկ, պստլիկ աղջիկ,
Լավ բան գիտես՝ լավ բան ասա։

— Չէ, չէ, ինչպե՞ս, կոշիկ չունեք,
Ախր թաց են փողոցները,
Կըրկ-նա-կոշիկ-ներ էլ չունեք,
Թրջվում են ձեր ոտիկները։

— Տո, մեր հոգսը մի քաշի դու,
Կոշկի-մոշկի կարիք չունենք,
Դու կարո՞ղ ես մեզ հաց, բան տուր,
Մի քիչ գարի, մի քիչ կորեկ։

— Կտամ, կտա՛մ, լավ ծիտիկներ,
Հավաքվեցեք, եկեք մոտիկ,
Կբերեմ ձեզ տաք բլիթներ,
Այ, ձեզ կորեկ, հաց ու հատիկ։

— Բե՛ր, բե՛ր, մատաղ, շաղ տուր գետնին,
Այ, ապրես դու, պստլիկ աղջիկ,
Տես պահարանն ինչ կա էլի,
Դուրս բեր քիչ-քիչ, մեկիկ-մեկիկ։

— Էֆ, էֆ, էֆ, էֆ, տես ինչ լա՜վ է,
Օխա՜յ, օխայ, կորեկ, հատիկ,
Բե՛ր, ախպեր ջան, բե՛ր, համով է,
Ճաշ եմ ասում, ապրես, աղջիկ։

— Վա՜յ, մոռացա, տես, չբերի
Գդալ, դանակ, պատառաքաղ,
Դեռ մի ուտեք, կացեք բերեմ
Անձեռոցիկ, բաժակակալ։




# Փիսիկը



Փիսիկն այսօր տխուր է,
Աչքերն արցունք ու ջուր է,
Լաց է լինում փիսիկոն,
Ինչպես չլա Փիսիկոն։
Վազեց բռնի ծիտիկին՝
Ո՞նց կբռնես ծիտիկին,
Ծիտիկը չի բռնվում,
Փախչում է ու ազատվում։

Լաց է լինում Փիսիկոն,
Ինչպես չլա Փիսիկոն,
Ծիտիկը չի բռնվում,
Ծիտիկն ուտվել չի ուզում։
Վա՜յ, վա՜յ, վա՜յ, վա՜յ, Փիսիկո՛,
Ո՞նց է բանդ, Փիսիկո,
Ծիտ ես ուզում ուտել միշտ,
Ծիտ որ չկա՝ վայ է, վիշտ։








Նկ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆԻ

— Ոչինչ, ոչինչ, վնաս չունի,
Դու ուտելիք մենակ շատ բեր,
Բաժակի հետ գլուխ չունենք,
Շատ սովոր չենք մենք գդալի։

— Խեղճ ծիտիկներ, դուք տուն չունեք,
Եվ դուք մրսած պիտի քնեք։
— Ի՜, պատերի ճեղքեր քիչ են,
Մեր բները տաք չեն՝ ինչ են։

— Լավ, ծիտիկներ, բա որ չունեք
Պարի զուռնա՛, մամած հարամ,
Դուք ինչ պիտի պարեք պարեք,
Վալս, մազուրկա, տանգո, գոպակ։

Բա՞ն չունես դու, պստլիկ աղջիկ,
Ի՜նչ, զուռնան գիտեր հիմի.
Պար ես ուզում՝ տես թե ինչ ենք
Թռչում տանգո, վալս ու յալլի։

Դե, ապա մի ծափ տուր չափով,
Դե, ծիտիկներ, վեր կացեք մի,
Դե պար, պապար, ոտ վերցրեք,
Տարա՜յ նանայ, տարա՜յ նինի։

Դե, ծափ տուր ու մոտիկ արա,
Էս քեզ տանգո, էս քեզ ռանգի,
Էս ֆոկստրոտ, ուզունդարա,
Էս էլ ծափ խաս արնգի։

Զարկեք ամուր թև ու տտիկ,
Ճվճվացեք աշխարհով մին,
Տեսա՞ր պարը, պստլիկ աղջիկ,
Տարա՜յ նանա, տարա՜յ նինի։

Տաշ, տաշի, տա՜շ, ծափ տվեք, ծա՛փ,
Օխա՜յ, օխա՜յ, գետր մոտիկ,
Թռեք, գիր գուգուկ ու դափ,
Եմբուլներր հանեք երկինք,—
Թը՜ր ռռռ...





## ՎԵՐՋԸ

Բայց մտածիր, Փիսիկո,
Խելքի՞ բան է, Փիսիկո,
Ծիտիկն ինչպես թույլ տա քեզ,
Բռնես իրեն և ուտես։
Բա մեղքը չի՞ Ծիտիկոն,
Բա չապրի՞ մեր Ծիտիկոն,
Չէ, ծիտիկն էլ խելք ունի,
Նա բերանդ ինչ կընկնի։





# ԿԻԿԻԲԻՈՆ և ԿՌՈՒՆԿԸ

ՖԼՈՐԱ (Իտալական «ՊԻՈՆԵՐ» ամսագրից) Նկ. Գ. ԽԱՆԱԳՅԱՆԻ

Կիկիբիոն ոչ միայն լավ խոհարար էր, այլև ինքն էր սիրում լավ ուտել: Մի անգամ նա իր տիրոջ ճաշի համար կռունկ էր տապակում և աննկատելիորեն կերավ կռունկի ամբողջ ոտքը: Ճաշի ժամանակ տերը, իհարկե, նկատեց, որ մի ոտքը պակասում է, և զարմացած հարցրեց խոհարարին.

— Իսկ ո՞ւր է երկրորդ ոտքը, Կիկիբիո:

— Միթե՞ դուք չգիտեք, սինյոր, որ կռունկները մի ոտք ունեն,— չշփոթվելով, պատասխանեց Կիկիբիոն:

Տերը շատ բարկացավ, բայց զսպեց իրեն և հանգիստ ասաց.

— Լավ, վաղը դու ինձ հետ որսի կգաս և այն ժամանակ կտեսնենք, ճի՞շտ ես ասում, թե ստում ես:

Առավոտյան տերը Կիկիբիոյի հետ միասին գնաց որսի: Մի ժամից հետո նրանք մոտեցան գետին: Ափին նրանք տեսան կռունկների մի երամ, որոնք քնած էին, սովորականի պես կանգնած մի ոտքի վրա:

— Ահա, տեսնո՞ւմ եք, ես ձեզ զուտ ճշմարտություն եմ ասել,— ուրախացավ Կիկիբիոն:

Տերը, ոչինչ չպատասխանելով, ծափ տվեց և բացագանչեց.

— Օ՜, օ՜, օ՜:

Աղմուկից արթնացած, կռունկները դուրս հանելով երկրորդ ոտքերը, միանգամից թռան դեպի երկինք:

— Այժմ դու տեսնո՞ւմ ես, խաբեբա, որ կռունկը երկու ոտք ունի,— բարկացած ասաց տերը Կիկիբիոյին:

— Տեսնում եմ, սինյո՛ր, տեսնում եմ: Բայց եթե դուք սեղանի մոտ նույնպես ծափ տայիք և բացագանչեիք. «Օ՜, օ՜», այն կռունկը հավանաբար դուրս կհաներ երկրորդ ոտքը:



Այս մարդիկ ծովում իրենց զգում են այնպես, ինչպես տանը, կամ ավելի ճիշտ՝ ինչպես ձուկը ջրում։



Հնդկական օվկիանոսի Կորալյան խութերը և նրա բնակիչները զարմացնում են իրենց գույների բազմերանգությամբ ու պայծառությամբ։ Այս ձուկ-թիթեռնիկը նման է կենդանի ծիածանի։

Ծովային խորությունները հետազոտողների առաջ բաց են անում զարմանահրաշ էակների մի հետաքրքիր աշխարհ։

Խութի խոռոչում թաքնվել է գիշատիչ փողոշը։



Ընդմիշտ լռել է «Տիստլերգորմ» նավի զանգը:
Այդ նավը խորտակվել է երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ:
Ճայերի փոխարեն նրա շուրջը պտտվում են գունագեղ «հրեշտակային» ձկները:

Ֆրեդերիկ Դյուման Միջերկրական ծովի հատակում խաղում է խեցգետնի հետ:

Այս կապույտ շնաձուկը խփել են ջրսուզակները ստորջրյա մենամարտի ժամանակ:

Գունավոր լուսանկարները կատարել են Ժակ-Իվ Կուստոն և Ֆրեդերիկ Դյուման (տես «Աշխարհը ջրի տակ» էջ 27)։




(Իրանական կյանքից)

Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ



Մենք պետք է Ղոլիին որբանոց տանեինք։ Ոչ թե ինձ, այլ Ղոլիին։

Չնայած Ղոլին կաղ չէր, իսկ ես կաղ էի, բայց նրանից ավելի արագ էի վազում։ Նա դույլի կեսի կեսն էր առվից ջուր լցնում ու տուն բերում, իսկ ես՝ դույլի կեսից էլ մի քանի ավելին։ Ես երբեմն այնպես էի քայլում, որ գրեթե չէր երևում, թե կաղ եմ. բացի այդ՝ Ղոլին լալկան էր, իսկ ես, ինչ էլ որ պատահեր, լաց չէի լինի։ Կարող էի երեք օր ոչինչ չուտել, իսկ նա մի օր հազիվ էր դիմանում։ Հետո ես Ղոլիից ավելի մեծ էի...

Առավոտյան, երբ արթնացա, տեսա հայրիկը հագնված, սենյակի մի անկյունում նստած, ինձ է նայում։ Ես հասկացա ամեն ինչ և սուս ու փուս սկսեցի հագնվել։ Հայրիկը միշտ էլ այդպես էր նստում. կարճ ու կլոր ոտների թաթերը իրար միացրած, ծնկները իրարից հեռու... Իսկ երկար ձեռքերը դնում էր հատակին։

Ես արագ հագնվեցի, հետո արթնացրի ու հագցրի փոքր եղբորս՝ Ղոլիին։ Հայրիկը վերցրեց շորերի կապոցը, մեջքին կապեց Ղոլիին, և մենք, առանց մայրիկին արթնացնելու, դուրս եկանք։

Հետո, երբ նորից ես ներս մտա՝ կոշիկներս հագնելու, տեսա, որ մայրիկը արթնացել է։ Նա տարօրինակ հայացքով ինձ նայեց, ուզեց մի բան ասել, բայց չկարողացավ. ծանր հիվանդ էր։

Հայրիկի համար Ղոլին շատ թեթև էր. ես տեսել էի, ինչպես նա ծանր պահարաններ էր տեղափոխում, իսկ Ղոլին ինչ էր որ... ես էլ կարող էի շալակել ու որբանոց տանել նրան։ Բոլորն էլ կարող էին։

Ղոլին դեռ ոչինչ չգիտեր. ես երեք տարով մեծ էի նրանից։ Գիշերները, երբ մենք պառկում էինք, Ղոլին քնում էր, իսկ ես սուտ քուն էի լինում և ամեն ինչ լսում էի։ Հայրիկը համոզում էր մայրիկին, իսկ նա չէր համոզվում։ Միայն երեկ գիշեր մայրիկը լաց եղավ, և ես հասկացա, որ հայրիկը կարողացել է համոզել նրան։ Ինչ-որ հայրիկը ասում էր, մայրիկը ամեն ինչին համաձայն էր, բացի մի բանից.

— Նրան այնտեղ մեզ նման չեն սիրի, նա այնտեղ լավ կուտի, կսովորի, բայց չեն սիրի նրան։

Ղոլին այդ չգիտեր, Ղոլին ոչինչ չգիտեր։

— Ես գիտեի, ինչպես են գնում ավտոմեքենաները... Ես գիտեմ տառերը, չնայած դպրոց չեմ գնացել. գիտեմ, որ աստիճաններ կան բարձր շենքերում, սենյակներում սեղաններ ու աթոռներ են դրված. սեղանների վրա ամեն ինչ կա, ով ինչից ինչքան որ ուզում է, վերցնում է, չի կարելի ասել մի վերցրու։

Հայրիկը հանկարծ կանգ առավ, նայեց ինձ այնպես, ինչպես նայել էր առավոտը, երբ ես արթնացել էի, բաց արեց իր մեծ թաշկինակը, մոտեցավ ափսեի վրա մեղրաբլիթներ վաճառող տղային և հարցրեց.

— Սա մեղրից, ալյուրից ու յուղի՞ց է պատրաստված։

— Այո,— ասաց տղան։

Նա կարծում էր, որ հայրիկը միայն հարցնում է, չի գնելու։ Բայց հայրիկը Ղոլիի համար գնեց մի մեղրաբլիթ, և չգիտես ինչու, ինձ մեկնեց։ Ես երբեք մեղրաբլիթ չէի կերել, շատ էի ուզում ուտել, բայց...

— Չեմ ուզում,— ասացի ես,— Ղոլիին տուր։

— Վերցրո՛ւ։

— Չեմ ուզում, հայրիկ,— խնդրեցի ես,— ինձ մի՛ տուր...

— Իսկ ի՞նչ անեմ,— տխուր ասաց հայրիկը։

— Ղոլիին տուր, նա ինձնից փոքր է։

— Դե, վերցրու,— բացակումած ասաց հայրիկը։

— Չեմ ուզում, չեմ ուզում։

Ես վախից դողում էի։

— Ես եմ ուզում,— լաց եղավ Ղոլին։

— Ձայնդ կտրիր,— բարկացավ հայրիկը։

Հետո հայրիկը մեղրաբլիթը փաթաթեց թաշկինակի մե[illegible]

Նա անպայման ուզում էր ինձ տալ մեղրաբլիթը, չէր ուզում Ղոլիին տալ, որովհետև Ղոլին արդեն մերոնցից չէր։ Մենք շարունակեցինք ճանապարհը։

Մի փողոցում հայրիկը կանգ առավ և հարցրեց մի անցորդից.

— Ներողություն, աղբար, որբանոցն ո՞ւր է։

Մարդը մի քիչ մտածեց, հետո շարժեց ուսերն ու ասաց.

— Չգիտեմ։

Մենք մի քիչ էլ սպասեցինք. էլի մի մարդ երևաց... հայրիկը նրանից էլ հարցրեց. բայց նոր մարդն էլ չգիտեր։ Ինչ լավ կլիներ, եթե ոչ ոք չիմանար՝ որտեղ է որբանոցը. մենք տուն կվերադառնայինք։



Հետո մենք սկսեցինք դանդաղ քայլել։

Հանկարծ ծառերի միջից երևաց քարաշեն մի շենք։ Իսկույն ճանաչեցի...Ես երբեք չէի տեսել... բայց իսկույն ճանաչեցի, դա որբանոցի շենքն էր։ Հայրիկն էլ նկատեց և կանգ առավ. ես վախից սկսեցի դողալ. ամենից շատ իմ կաղ ոտքն էր դողում...

Մենք միանգամից չէինք կարող ներս մտնել։ Շենքի կողքին, պատի տակ, մի մեծ քար կար դրված. հայրիկը նստեց. ես էլ նստեցի։

Հայրիկն այնպես, ինչպես առավոտն էր նայել, բայց ավելի հոգնած, նայեց ինձ ու ասաց.

— Դու գիտես, Մնոյի...որ մայրիկն ու ես քեզ ու Ղոլիին հավասար ենք սիրում։

— Իհարկե, հայրիկ, ես ամեն ինչ գիտեմ, ամեն ինչ հասկանում եմ։

— Մի՞թե դու ամեն ինչ գիտես...

— Իհարկե, հայրիկ։

Հայրիկը լռեց. զարմացած ինձ նայեց։

— Ես, հայրիկ, գիշերները արթուն էի մնում և լսում էի՝ ինչ եք խոսում դու և մայրիկը։

— Չի կարելի... մեծերի խոսակցությանը չի կարելի ականջ դնել։

— Էլ չեմ անի։

— Իհարկե, իհարկե...— ցրված ասաց հայրիկը։

— Դե, ուրեմն, ներս գնանք։

Հայրիկը դժվարությամբ ոտքի ելավ. Ղոլին շատ էր ծանրացել։ Մուտքի մոտ մի մարդ նայեց մեզ, փնթփնթաց, բայց ոչինչ չասաց։ Մենք բարձրացանք երկրորդ հարկ։ Երկար միջանցքում մի նստարան կար դրված։ Ես նստեցի, իսկ հայրիկը դիմացի բաց դռնից ներս մըտավ։ Սեղանի ետև սև շորեր հագած մի նիհար մարդ էր նստած. հայրիկը խոսեց նրա հետ։

Մարդը ինչ-որ բաներ գրեց, հետո նայեց ինձ. Ես շատ վախեցա։ Հայրիկը հարցրեց.

— Իսկ յուղալի բաներ տալի՞ս եք ուտելու։

— Յուղալի՞... լինում է։

— Ամեն մեկին, ով որ երեխա է ուզում ձեզանից՝ դուք չեք տալիս, չէ՞։ Նայում եք կարգին մարդ լինի, որ հարազատի պես պահի ու սիրի... Իսկույն երևում է՝ ով է հարազատի պես, չէ՞։

— Երևում է։

— Ձմեռը վառում եք, տաք է լի-



նում... Գիշերները եթե բացվում են, ծածկում եք չէ...

— Ճիշտ է։

Նիհար մարդը հոնքերը վեր էր բարձրացրել, նայում էր հայրիկին և սպասում, որ հայրիկը խոսքը վերջացնի, որ ինքը պատասխանի՝ «ճիշտ է»։

Միջանցքի պատուհանից ես դուրս նայեցի։ Ուզում էի փողոց նայել։ Բայց պատուհանը բակի վրա էր... Ներքևում ուղիղ շարքով կանգնել էին երեխաները՝ սպիտակ օձիքներով, մոխրագույն հագուստով։ Նրանք անշարժ էին, բարակած։ Նրանց մոտ ոչ ոք չկար, բայց նրանք, չգիտես ինչու, չէին շարժվում. ինչ-որ զանգի ձայն էր գալիս։

Հայրիկն արդեն ուզում էր գնալ... հետո ուզեց մի բան էլ հարցնել, բայց մարդը պատասխանեց.

— Ճիշտ է։

Հայրիկը գոհ ժպտաց, դուրս եկավ ու մոտեցավ ինձ։ Նա լաց էր լինում, ես էլ լաց եղա։ Հայրիկը կռացավ, ես գրկեցի, համբուրեցի Դոլին ու ասացի.

— Մնաս բարև։

Հետո հայրիկը թաշկինակի միջից հանեց մեղրաբլիթը։ Նա ու, շատ էր ուզում, որ ես ուտեմ։

— Կեր, Մենի՛

Ես վերցրի մեղրաբլիթն ու սկսեցի ուտել, ես շատ էի սիրում հայրիկին։

Հայրիկը ամուր գրկեց ինձ, համբուրեց... Հետո արագ, նեղ ու երկար միջանցքով վազելով, հեռացավ իր հետ տանելով Դոլին։ Հայրիկը հեկեկում էր. նրա մեջքին կապած Դոլին թռչկոտում, կարծես քրքջում էր։ Նիհար մարդը մոտեցել էր դռանը և նայում էր նրանց հետևից։ Նրանք արագ անցան միջանցքով և կորան դռան մեջ։

Միջանցքը շատ կարճ էր։

Ես չգնացի, չվազեցի նրանց հետևից, սկզբից էլ գիտեի ամեն ինչ։ Ես գիշերները արթուն էի մնացել։



# Նամակ Վրաստանից

Վրացական հայտնի բանաստեղծ, վրացական Գիտությունների ակադեմիայի իսկական անդամ Իոսեֆ Գրիշաշվիլին զբաղվում է հայ մեծ դրամատուրգ Գաբրիել Սունդուկյանի կյանքի և ստեղծագործության ուսումնասիրությամբ:

Վերջերս Երևանի Սունդուկյանի անվան դպրոցի մի խումբ աշակերտներ դիմել են Ի. Գրիշաշվիլուն, խնդրելով նրան պատմել մեծ դրամատուրգի կյանքի ու ստեղծագործության մասին: Նրանք հատկապես ցանկացել են իմանալ վրաց գրականության ու թատրոնի հետ Գ. Սունդուկյանի ունեցած կապերի մասին:

Տպագրում ենք բանաստեղծի ուղարկած պատասխանը:

*Իմ սիրելի պատանի բարեկամներ.*

*Մեծ բավականությամբ կարդացի ձեր նամակը, որի մեջ խնդրում եք պատմել հայ թատերգության հիմնադիր, սիրելի դրամատուրգ Գաբրիել Սունդուկյանի կյանքի ու ստեղծագործության մասին, որը ծնվել ու երկար տարիներ ապրել է Թբիլիսիում:*

*Հայ նոր գրականության հիմնադիր Խաչատուր Աբովյանի մանավոր պատանի սան փոքրիկ Գաբոն մեծ հիացմունքով լսել է Աբովյանի դասերը: Ապրելով Թբիլիսիում, Սունդուկյանը հրաշալի գիտեր վրացերենը, գիտեր վրաց ժողովրդի պատմությունը, նրա գրականությունը, բանահյուսությունն ու թատրոնը:*

*Հայ դրամատուրգը քնքուշ սիրով բաց արեց վրաց թատրոնի դռները և այնտեղ գտավ այնպիսի տաղանդավոր վրացի դերասանների անուններ, ինչպիսիք էին Վասո Աբաշիձեն, Նատո Գաբունիան, Կոտե Ղիփիանին և ուրիշներ, որոնք իրենց հերթին Գաբրիել Սունդուկյանից վերցնում էին նրա ստեղծագործությունները և ոգևորությամբ վրաց բեմում ներկայացնում նրա անմահ կատակերգությունների կերպարները:*

*Առաջին անգամ «Պեպո» կատակերգության մասին խոսել է այն ժամանակ լույս տեսնող «Դրոեբա» թերթը: 1874 թվականի հունիսի 7-ի համարում գրված է. «Ներկայումս «Պեպոն» խաղում են և Ստամբուլում: Հնարավոր է, որ վրացիներս էլ մոտ ժամանակներս Թբիլիսիի բեմում դիտենք այդ կատակերգությունը»:*

*«Դրոեբայի» այդ երազանքը իրագործվեց, բայց ոչ Թբիլիսիում, այլ Քութայիսիում: «Պեպոն» հայերենից թարգմանվեց վրացերեն Սունդուկյանի կողմից և 1874 թվականի հոկտեմբերի 21-ին բեմադրվեց Քութայիսիի թատրոնի բեմում:*

*Թբիլիսիի վրացի հանդիսատեսը «Պեպո» կատակերգությունը դիտեց միայն մի տարի հետո՝ 1875 թվականի նոյեմբերի 27-ին:*

*Բեմադրությանը շատ օգնեցին ինքը՝ հեղինակը և հայ տաղանդավոր դերասան Գևորգ Չմշկյանը, որը վրաց բեմում հանդես եկավ Պեպոյի դերում:*

*Թիֆլիսի հասարակայնությունը այդ բեմադրությունն համարեց կուլտուրական մեծ իրադարձություն, արվեստի իսկական տոն: Հանդիսատեսները մեծ հետաքրքրությամբ դիտում էին հուզիչ ներկայացումը:*

*Վրաց մեծ գրող Իլյա Ճավճավաձեն ասել է. «Մեր վրացական ռեպերտուարում թարգմանական պիեսների մեջ «Պեպոն» շատ պիեսներից լավագույնն է»:*

*Նույն կարծիքի էր նաև վրաց ամբողջ հասարակայնությունը:*



Ի. Գրիշաշվիլին երեխաների հետ.

*«Պեպո» պիեսը տպագրվեց 1880 թվականին Իլյա Ճավճավաձեի գլխավորությամբ հրատարակվող «Իվերիա» ամսագրում, իսկ շուտով վրացերեն հրատարակվեց առանձին գրքով:*

*Գաբրիել Սունդուկյանի մի շարք հրանալի պիեսներ մտան վրացական դրամատուրգիայի ոսկե ֆոնդը: Հետագայում «Պեպո» կատակերգությունը վրացական թատրոնի ռեպերտուարում գրավում է պատվավոր տեղերից մեկը:*

*Այն ժամանակվա համարյա բոլոր հայտնի անուն ունեցող դերասանները, ինչպես նաև սիրող դերասաններ, վրաց գրականության հայտնի գործիչներ՝ Ալեքսանդր Ղազբեգին, Ակակի Ցագարելին, մեր Ակակի Ծերեթելին «Պեպո» կատակերգության մեջ խաղացել են գլխավոր դերերը:*

*Գաբրիել Սունդուկյանի գրական գործունեության երեսնամյակի առթիվ, նրան ուղղված ուղերձում հայտնի հասարակական գործիչ Նոսե Ղիփիանին այսպես է ասել.*

*«...Երևացիք դուք և վրաց թատրոնի համար ստեղծվեց մի նոր շրջան: Սկսվեց մի նոր կյանք: Քսանհինգամյա լեթարգիական քնից արթնանալով, վրաց թատրոնը սկսեց վերածնության շրջանը:*

*Այդ վերածնությամբ մեր թատրոնը ամբողջովին-պարտական է Ձեզ, որովհետև Դուք Ձեր դրամատիկական երկերով նորից կյանքի ոգեշնչեցիք նրան և հնարավորություն տվիք, որ մեր թատրոնի կանգ առած զարկերակը նոր ուժով բաբախի...*

*Ձեր տաղանդի շնորհիվ մեզանում հանդես եկավ դերասանների և դերասանուհիների մի ամբողջ աստեղախումբ, ձեր երկերը հայտնաբերեցին մեզանում տաղանդներ, որոնց մենք առաջ չգիտեինք...»:*

*Սունդուկյանի հոբելյանական երեկոն դարձավ վրաց և հայ ժողովուրդների եղբայրական կուլտուրական կապերի վառ ցույց:*

*Վրացի աշխատավորները շատ են սիրում Սունդուկյանին: Այդ սերն ու հարգանքը իր ժամանակ մի բանաստեղծությամբ արտահայտել է վրաց մեծ գրող Ակակի Ծերեթելին, որը դրամատուրգի հին և մոտիկ ընկերն էր.*

*Ես մի վրացի, իսկ դու հայ ես մի,*
*Բայց մենք երկուսով եղբայր ենք հիմի,*
*Ջավակներն ենք մենք նույն հողի, ջրի,*
*Եվ նույն բնության, և նույն լեռների...*

*Անցած տարի հունիսին Թբիլիսիում տոնվեց վրացական թատրոնում Սունդուկյանի «Պեպո» պիեսի առաջին բեմադրության ութսուն տարին: Այդ առթիվ վրացական թատրոնի արտիստները ցուցադրեցին «Պեպոն»:*

*Սունդուկյանի «Պեպոն» մինչև այսօր վրաց թատրոնում պատվավոր տեղ է գրավում:*

*Սունդուկյանը իր լուսավոր կյանքը նվիրել է ժողովուրդների բարեկամությանը, նրանց մերձեցման ազնիվ գործին:*

# Շնորհակալություն
# Ներողություն
# Խնդրեմ

Ա. ԲԱԲԱԽԱՆՅԱՆ
Նկ. Ա. ԶԱՔԱՐՅԱՆԻ

Սուրիկի տատիկը, որը մեկ ամսով հյուր էր եկել, որոշել էր կիրակի օրը Արմիկի հետ գնալ հորաքրոջ տուն:

«Ի՞նչ է, ես փո՞քր եմ, որ ինձ չեն տանում, իրենց կխանգարե՞մ»,—մտածում էր Սուրիկը, բայց լռում էր: Եվ ահա շաբաթ օրը դպրոցից տուն գալով, Արմիկը մտածկոտ ասաց մայրիկին.

—Վաղը մենք ջոկատով էքսկուրսիա պետք է գնանք, չգիտեմ ինչ անեմ:

Սուրիկին էլ հենց այդ էր հարկավոր:

—Քույրիկ ջան, դու գնա, տատիկին ես կտանեմ:

Տնից դուրս գալուց առաջ մայրն ասաց.

—Տե՛ս, Սուրիկ, խելոք ու կուլտուրական եղիր՝ թե չէ տատիկը քեզ էլ ո՛չ մի տեղ չի տանի իր հետ:

—Շատ լավ:

Եվ ահա նրանք գնում են հորաքրոջ տուն:

—Որքան գեղեցիկ կլինի հիմա Վահանենց սար տեղը,—մտածում էր Սուրիկը:—Իսկ ինչքան լավ են խաղում նրանց թիմի ֆուտբոլիստները...

Նոր էին հասել կանգառին, որ զնգալով եկավ Արաբկիր տանող տրամվայը: Սուրիկն սկսեց հրել իր կողքին կանգնած կնոջը և ճամփա բացել տատիկի համար: Իսկ այդ ժամանակ կարմիր վզկապավոր մի աղջիկ բռնելով տատիկի ձեռքից, աստիճաններով վեր բարձրացրեց: «Կարծես իր տատիկն է: Ի՞նչ է, ես չէի՞ կարող»—մտքում դժգոհեց տղան: Հետո ինքն իրեն մխիթարեց. «Երևի կարծեց, թե տատիկս մենակ է»:

Վագոն բարձրանալով Սուրիկն սկսեց ազատ տեղ որոնել: Մի երիտասարդ վեր կացավ և տատիկին նստեցրեց:

«Նորից ուշացա» դառնությամբ մտածեց Սուրիկը, որ ուզում էր անպայման տատիկի մոտ ուշադիր երևալ:

Ահա տատիկը պատրաստվում է տոմս գնել: Սուրիկը արագ վերցնում է դրամը և դիմում տոմսավաճառին.

—Խնդրեմ, երկու տոմս:

Հենց այդ ժամանակ մի անհնազանդ քսան կո-

պեկանոց գլորվեց նստարանի տակ: Տոմսավաճառը, որ մի գեր կին էր, մի ձեռքով բռնելով պայուսակը, կռացավ, վերցրեց դրամը և տոմսերը հանձնեց տղային: Տղան շնորհակալություն հայտնեց: Սուրիկը վերցրեց տատիկի ձեռնափայտը և սկսեց նրանով խաղալ: Իսկ երբ ձեռնափայտը դիպավ իր կողքին կանգնած մարդուն, նա ներողություն խնդրեց:

Ընդամենը երեք կանգառ էին անցել, բայց մի քանի անգամ լսվեց «շնորհակալություն, ներողություն, խնդրեմ» բառերը արտասանող Սուրիկի զնգուն ձայնը: Իսկ տատիկը կարծես նրան չէր տեսնում (երևի այն պատճառով, որ ակնոցները բռնել էր ձեռքին) և չէր էլ լսում, որովհետև զրուցում էր կողքին նստած մի սպիտակահեր կնոջ հետ: Մեկ էլ նա լսեց անծանոթ կնոջ հարցը.

—Սա երևի ձեր թոռնի՞կն է,— և դրական պատասխան ստանալով, ավելացրեց.— Շատ կուլտուրական է երևում:

Տղան հպարտությամբ նայեց շուրջը, ստուգելու, թե ինչ տպավորություն թողեց իր հասցեին արած այդ գովասանքը: Սակայն կարծես թե ոչ ոք չլսեց նրա խոսքերը և ոչ մեկը չնայեց իր կողմը...Ինչո՞ւ նրանք այդքան ցածր ձայնով են խոսում: Ա՛յ, տոմսավաճառը բարձրաձայն հայտարարեց.

—Լենինի պողոտա:

Անծանոթ կինը արագ վերցրեց Սուրիկի ոտքերի մոտ դրված պայուսակը, ինչ-որ փաթեթ և հազիվ կարողացավ վագոնից իջնել: Սուրիկը ուրախացավ, իսկույն նստեց նրա տեղը և զարմացած նայում էր նրանց, ովքեր կանգնած լրագիր կամ գիրք էին կարդում: Օրինակ՝ իր դիմաց կանգնածը, որ պապիկին շատ նման մի մարդ էր, ակնոցները հարմարեցնելով, լրագիր էր կարդում:



Նրանք տեղ հասան: Նորից լսվեց Սուրիկի զիլ ձայնը.

—Ներեցեք, թույլ կտա՞ք իջնել:

Նրանից առաջ պապիկին նմանվող մարդը, որը գրպանն էր դնում արդեն ծալած լրագիրը, չգիտես ինչու, բարկացկոտ ասաց.

—Մենք էլ ենք իջնում, փոքրիկ:

—Խնդրե՛մ, խնդրե՛մ,— սիրալիր ժպտաց տղան, չնայած վիրավորվել էր, որ իրեն փոքրիկ էին կոչել:

* * *

Մի քանի րոպեից տեղ հասան: Հորաքույրը շատ ուրախացավ և տատիկին բարևելուց հետո, ոտքից գլուխ զննեց Սուրիկին, համբուրեց ու ասաց.

—Ինչ մեծ տղա ես դարձել, ես քեզ...

—Ներեցեք, Սիրուշ հորաքույր,— ժպտալով ընդհատեց Սուրիկը:— Նա բաց պատուհանից տեսել էր պարտեզով անցնող Վահանին և նրա ընկերներին,— կարելի՞ է գնալ պարտեզ, Վահանի մոտ:

Տատիկը նայեց զարմացած հորաքրոջը, ակնոցները բարձրացրեց ճակատին և մռայլ ու հանդիմանական հայացքն ուղղեց թոռնիկին: Վերջինս շփոթվեց, ժպիտը դեմքին սառած մնաց:

—Կարծում էի, որ դու արդեն մեծ ես և օրինակելի պիոներ, իսկ դու հենց ոտքից դուրս եկար, մոռացար մայրիկիդ պատվերը,— դժգոհեց տատիկը:

—Ներողություն, տատի ջան, ես շատ լավ եմ հիշում մայրիկի պատվերը և ինձ շատ կուլտուրական եմ պահում:

—Շատ կուլտուրական...,— հեգնեց տատիկը.— Ներողություն...Շնորհակալություն...խնդրեմ...

Չգիտես ինչու նա մի պահ լռեց ու անտարբեր վերջացրեց.

—Լավ, գնա երեխաների հետ խաղա, այդ մասին կխոսենք տուն վերադառնալուց հետո: Նա դեմքը շրջելով սկսեց զրուցել հորաքրոջ հետ: Կարծես թե ոչ մի բան չէր պատահել:

Սուրիկը դանդաղ քայլերով իջնում էր աստիճաններից ու մտածում: Նա չէր կարողանում հիշել, թե ի՞նչ անկուլտուրական բան է արել:

«Ինչպես միշտ, այսօր էլ խելոք ու կուլտուրական եմ եղել: Գուցե տատիկը սխալվում է»,— մտքում վճռեց նա և վազեց միացավ իր կողմը եկող երեխաների խմբին...

Երեկոյան, բոլորի ներկայությամբ, տատիկը թոռնիկի հետ երկար զրույց ունեցավ:

* * *

Երեխաներ, ի՞նչ եք կարծում, Սուրիկն իրեն կուլտուրակա՞ն պահեց տատիկի հետ եղած ժամանակ. տատիկն ի՞նչ ասաց նրան:

## ԽԱՂ

ԳԵՎՈՐԳ ԵԳԱՆՅԱՆ

Բուքն է դրսում ոռնում տխուր,
Ճվի փչում, պար գալիս,
Եվ գազազած սուլում է սուր,
Գիժ-գիժ թռչում, ծափ տալիս:

Ու ծածկվում է ձյունի գորգով,
Ե՛վ դաշտ, և՛ տուն, և՛ այգի,
Ծածկվում սառը, հաստ վերմակով
Երեսը ջինջ գետակի:

Մանուկները կայտառացած,
Հագին մուշտակն իրենց տաք,
Բլրից երգով սահում են ցած՝
Առած դահուկ ու սահնակ:

## ՁՄԵՌ

ԿԱՌԼԵՆ ՄԻՆԱՍՅԱՆ

Քուն մտան ծաղիկները,
Քուն մտավ աղբյուրն անուշ,
Քուն մտան թիթեռները,
Ձմեռ է, մեգ է, մշուշ:

Բայց կգա շուտով գարուն,
Կհալվի ձյունը սարի,
Կկանչի նորից առուն,
Քեզ կասի՝ արի, արի:

Իսկ հիմա ցուրտ է, ձմեռ,
Մրսում են ծառերը մերկ,
Ու միայն եղևնին դեռ
Երգում է գարնան մի երգ:

# Ֆոկուսի գաղտնիքը

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Թեև մենք հետաքրքրությամբ սպասում էինք հայտնի իլյուզիոնիստին, բայց հաստատ որոշել էինք ոչ մի բանի վրա չզարմանալ:

Եվ ահա նա եկավ մեզ մոտ: Մենք նրան ասացինք.

— Սիրելի Հարություն Համայակովիչ, խնդրում ենք, պատմեք ձեր աշխատանքի մասին: Չէ՛ որ երեխաները շատ են հետաքրքրվում ֆոկուսներով, բայց ոմանք չկարողանալով բացատրել դրանք, երբեմն կարծում են, թե ֆոկուսները հրաշք են...

— Ուրեմն միայն երեխանե՞րն են հրաշքներին հավատում,— ժպտաց Հակոբյանը,— իսկ դո՞ւք:

— Մե՞նք: Դե մենք մեծ ենք:

— Իհարկե, աշխարհում իսկապես որ հրաշքներ չկան: Մի՞թե սա հրաշք է,— շարունակեց նա, իր ճամպրուկի միջից մի փոքր գավաթ հանելով,— սա դատարկ բան է:

Եվ նա իր ձեռքն ու գավաթը ծածկեց թաշկինակով ու իսկույն ետ քաշեց:

Գավաթը լցված էր վճիտ, ոսկեգույն լիմոնադով:

— Տեսա՞ք,— խմելով լիմոնադը, ասաց Հակոբյանը,— սա բոլորովին էլ հրաշք չէ: Ձեզ հետ միասին մենք դրան չենք հավատում:

Նա թաշկինակը նորից գավաթի վրա գցեց, որը նորից բերնեբերան լցվեց լիմոնադով:

Մենք ապշել էինք: Տեղի էր ունենում մի այնպիսի բան, որին չէր կարելի հավատալ, բայց և անհնար էր հասկանալ...

— Դե, էլ ի՞նչ պատմեմ ձեզ: Չէ՞ որ ֆոկուսը շատ հասարակ բան է: Ահա, օրինակ, թաշկինակները,— Նա նկարչի [illegible]ից դուրս քաշեց երկու մետաքսե թաշկինակ[illegible]ցեք, բայց սրանք իմն են, ազնիվ խոսք: Հ[illegible]ն, ահա ձեզ երկու թաշկինակ՝ կապույտ և սպիտակ: Տեսնու՞մ եք, ես սրանք հանգույցով իրար եմ կապում: Հիմա բավական ամուր ձգում եմ: Իսկ հիմա...

Հակոբյանը մի ակնթարթում թաշկինակներից մեկը գցեց ձախ ձեռքին, որով բռնել էր հանգույցը և խայտաբղետ կծիկը արագորեն նետեց խմբագրության քարտուղարի ծնկներին:

Սա հետաքրքրությամբ բարձրացրեց... թաշկինակներից մեկը միայն, իսկ մյուսը մնաց ծնկի վրա:

— Ապա տվեք ես հանգույց անեմ, ո՛չ, այն ժամանակ բացեք,— վրա տվեց քարտուղարը:

Եվ նա այնպես ամուր հանգույց արեց, որ մենք, խղճալով իլյուզիոնիստին, համաձայնեցինք դադարեցնել ֆոկուսը: Բայց Հակոբյանն ավելի ամուր ձգեց հանգույցը, նորից թաշկինակներից մեկը մի վայրկյան գցեց իր ձեռքի վրա և իսկույն երկու թաշկինակներն էլ վեր նետեց: Նրանց վրա նույնիսկ հանգույցի հետքեր չկային:

Հրաշքների նկատմամբ ունեցած մեր անհավատությունը սկսեց երերալ, իսկ Հակոբյանը, կարծես չնկատելով այդ, հանգիստ շարունակում էր...

— Կգտնվի՞ արդյոք ձեզ մոտ մի կտոր թոկ ու մկրատ: Գիտե՞ք հայտնի առածը՝ յոթը չափիր, մեկ կտրիր: Ա՛յ, հիմա ես ուզում եմ ձեզ ցույց տալ, թե այդ առածը ինչպես է հայտնվել:

Հակոբյանը թոկը կեսից ծալեց, այնպես, որ նրա երկու ծայրերը դուրս ցցվեցին ձախ ձեռքից, իսկ աջում օղակ ստացվեց: Հետո մի անգամ էլ թոկը կեսից ծալեց: Հիմա նրա ձախ ձեռքին երկու ծայրերն էին և օղակը:

— Վերցրեք մկրատն ու կտրեք,— առաջարկեց նա նկարչին:

Սա խորամանկորեն ժպտալով արագ կտրեց թոկը: Իլյուզիոնիստի մատների արանքից դուրս սահեցին թոկի ծայրերը, և մենք նրա ձեռքին տեսանք կտըրված թոկի երկու մասերը:

— Բարի եղեք, կապեք ծայրերը,— խնդրեց նա:

Հետո, բռնելով թոկի երկու ծայրերից, նա ցույց տվեց մեզ հանգույցը:

— Իսկ հիմա...— արտասանեց Հակոբյանը:— Ո՞ւր է հանգույցը...

Հանգույցը չկար: Թոկը բոլորովին անվնաս էր: Ուրախ հայացքով մեզ նայելով, Հակոբյանը շարունակեց.

— Ձեզնից որևէ մեկը կարո՞ղ է ինձ քսանհինգ ռուբլիանոց տալ: Ոչ, ոչ, սկզբում նայեք համարն ու սերիան և դրանք պահեք մտքերումդ, կամ գրեք մի տեղ: Ա՛յ, հիմա տվեք:

Նա թղթադրամը ձեռքն առավ, ծալեց, հետո էլի ու էլի ծալեց, մինչև որ դարձրեց ամուր, փոքրիկ ուղղանկյունի: Հետո նա մետաքսե թաշկինակով ծածկեց այն ու հանձնեց մեզնից մեկին.

— Ամուր բռնեք,— Հակոբյանը քրքրեց գրպանները և հանեց մի փոքրիկ ծալովի դանակ:— Նայեք,— առաջարկեց նա: Դա մի սովորական դանակ էր:— Իսկ հիմա նայեք այստեղ: Իմ ձեռքում թարմ, նոր կարտոֆիլ է,— և ցույց տվեց մի փոքրիկ, անվնաս և նույնիսկ չմաքրված կարտոֆիլ:

Նա մոտեցավ թաշկինակով դրամը բռնողին և թաշկինակը վերցնելով նրանից, թափահարեց օդի մեջ: Թղթադրամն անհետացել էր: Թաշկինակն անփութորեն նետելով սեղանին, իլյուզիոնիստը վերցրեց դանակը և արագ կիսեց կարտոֆիլը: Նրա ներսում սալորի կորիզի նման երևում էր քսանհինգ ռուբլիանոցը:

Մենք վհատված լռել էինք: Բանից պարզվում էր, որ հրաշքներ կան:

Իսկ Հարություն Հմայակովիչը, ընդհակառակը, ավելի զվարթացավ:

— Ֆոկուսը կարող է ոչ միայն զվարճացնել, այլև կարող է ազատել փորձանքից: Ասենք, ձեր ժամացույցը կոտրվել է: Մի՞թե դուք միանգամից կվազեք վարպետի մոտ: Կարծում եմ, որ ես էլ վատ վարպետ չեմ: Տվեք, խնդրեմ, ձեր ժամացույցը,— դիմեց նա նկարչին:

Նկարիչը դժկամությամբ հանեց իր գրպանի ժամացույցը և տվեց իլյուզիոնիստին: Սա ժամացույցը փաթաթեց թղթի մեջ և զգուշորեն գցեց սեղանի վրա դրված դատարկ նիկելապատ անոթի մեջ: Հետո անոթը ծածկեց կափարիչով, ինչ-որ բան շշնջաց, վերցրեց կափարիչը և սկսեց գործնական տեսքով իր ձեռքի կախարդական ձողիկով ծեծել անոթի միջի ժամացույցը:

— Ժամացույցս,— լալագին հառաչեց նկարիչը:

Իսկապես, գործը կարծես վատ ընթացք էր ստանում, նայելով անոթի մեջ, Հակոբյանն անվստահորեն ասաց.

— Դուք ներեցեք ինձ... ես, իհարկե, կվճարեմ... բայց... չեմ հասկանում, ինչպե՞ս կարող էր այսպես ստացվել...— և նա, անոթը շուռ տալով, սեղանին լցրեց ժամացույցի մասերի մի ամբողջ կույտ:

Նկարիչը պապանձվել էր: Նրա նոր ժամացույցը հիմա կարող էր ժամանակը ցույց տալ այնպիսի ճշտությամբ, ինչպես, ասենք, պահածոյի տուփը: Ինքը՝ իլյուզիոնիստը, գլուխը կախած, լռել էր:

— Դե, ես գնամ,— անվճռականորեն ասաց Հակոբյանը:

— Ինչպես չէ, տվե՛ք ժամացույցս,— սպառնագին ձայնով մռնչաց նկարիչը:— Ինչ ուզում եք արեք, բայց ժամացույցս վերադարձրեք:

— Դե, եթե կարելի է անել այն, ինչ ուզում եմ, ապա կփորձեմ:

Հակոբյանն այլանդակված ժամացույցը կրկին դրեց անոթի մեջ, ծածկեց կափարիչը և սկսեց եռանդով կախարդել իր «ֆոկուսների ոգուն»: Հետո վերցրեց կափարիչը և զգուշորեն դուրս հանեց... բոլորովին անվնաս ժամացույցը:

Մինչ նկարիչը ստուգում էր ժամացույցի ընթացքը, Հակոբյանն ուրախ ծիծաղում էր, իսկ մենք շփոթված նրան էինք նայում և աստիճանաբար սկսում էինք հասկանալ, որ իլյուզիոնիստը պետք է նաև լավ դերասան լինի: Չէ՞ որ նրա հուսահատված դեմքը մեզ բոլորովին շշկլացրել էր:

Շարունակելով ծիծաղել մեզ վրա, Հակոբյանը բաժակի մեջ ջուր լցրեց, դրեց իր ծալովի սեղանի վրա ու մի մեծ թաշկինակով ծածկեց: Հետո թաշկինակը բաժակի հետ միասին բարձրացրեց և ուժգին թափ տվեց: Մենք վախեցած ետ քաշվեցինք, որ չթրջվենք: Բայց... ջուր չկար: Բաժակն էլ ո՛չ սեղանի վրա էր, ոչ էլ իլյուզիոնիստի ձեռքին, թեև մենք հենց նոր տեսանք, թե ինչպես նա թաշկինակի մեջ զգուշորեն բռնել էր այն:

Դրանից հետո սկսվեց ֆոկուսների մի գլխապտույտ: Մենք իրավամբ հուզվել էինք իլյուզիոնիստի գեղեցիկ արվեստից:

— Չէ՞ք կարող արդյոք բարձրացնել թեկուզ մի փոքր ծայրը այն խորհրդավոր վարագույրի, որի հետևում, թաքնվում է ֆոկուսի «հատիկը»,— հարցրինք մենք Հակոբյանին:

— Դե ի՞նչ կա որ: Իհարկե, կարող եմ,— պատասխանեց նա:— Իմ կարծիքով, դա նույնքան անհրաժեշտ է: Մեր հանդիսատեսը սիրում է դիտել իլյուզիոնիստների խաղերը, իսկ դպրոցական ինքնագործունեության ծրագրերում ֆոկուսներ խիստ հազվադյուտ են լինում: Այնինչ դա բարձր արվեստ է, որով զբաղվելու համար պահանջվում է լավ իմանալ մեխանիկան, ֆիզիկան, քիմիան, հոգեբանությունը, դերասանական վարպետությունը:

Ֆոկուսը զարգացնում է գյուտարարությունը, հնարամտությունը, ֆիզիկական ճարպկությունը: Ես հաճույքով կբացատրեմ մի շարք ֆոկուսներ և էլ ավելի մեծ հաճույքով կուզեմ երբևէ դրանք տեսնել դպրոցական բեմի վրա:

Եվ Հակոբյանն սկսեց բացատրել իր ցույց տված ֆոկուսները: Մեր ամսագրի հաջորդ համարում դուք կկարդաք այդ բացատրությունները:






Գ. ԲԱԴԱԼՅԱՆ

ՆԿ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Գոլովինո գյուղի ծայրին ավտոբուսը հանկարծ կանգնեց։ Վարորդը, որ մինչ այդ քթի տակին ինչ-որ մեղեդի էր մռմռում, գլուխն իսկույն դուրս հանեց խցիկից։ Ուղևորները տեսան, թե ինչպես մի փոքրիկ տղա մոտեցավ մեքենային և ձեռքի օրագիրը մեկնեց վարորդին։

—Բարև, վարպետ Շահեն։

Վարորդը ուշադիր նայեց օրագրին, հետ վերադարձրեց տղային ու աչքով արեց նրան.

—Տաս հնարավորից՝ ութ միավոր, ապրես, Գուրգեն, նստիր, գնացինք։

Ուղևորների զարմացած հայացքները դարձան դեպի տղան, որը հպարտ-հպարտ մտավ ավտոբուսը և տեղավորվեց վարորդի կողքին դրած աթոռակի վրա։

Ո՞վ էր այդ տղան, ինչու՞ վարպետ Շահենը ստուգեց նրա օրագիրը։

Իսկ վարպետը այդ ժամանակ զրուցում էր Գուրգենի հետ։ Բոլորը լսեցին, թե նա ինչպես ասաց.

—Տես հա, մյուս անգամ աշխատիր ոչ մի միավոր չկորցնել։

Խճուղու ոլորապտույտների վրա, անտառի եզրին եղած միայնակ տնակի առաջ մեքենան կանգ առավ։ Գուրգենը ցատկեց ներքև և ձեռքը թափահարելով անհետացավ։ Ավտոբուսը շարունակեց ճանապարհը։

Վարորդը կիսով չափ շուռ եկավ դեպի ուղևորները և ասաց.

—Բա չե՞ք էլ հարցնում, թե ով է այդ տղան,—և չսպասելով, որ ուղևորները որևէ բան ասեն, շարունակեց։ - Սա մեր Գուրգենն է, շատ լավ տղա է։ Նրա հայրը այս ոլորապտույտների վրա է աշխատում, ձմեռը ճանապարհն է մաքրում, ամառը խորացնում է եզրերի առուները։ Նրա ընտանիքը հենց այստեղ, ճանապարհի վրա է ապրում, ա՛յ, այն տնակում։ Լավ մարդիկ են։ Ձմեռները մենք շատ անգամ ենք տաքացել նրանց տանը, մինչև որ ճանապարհը մաքրվել է ձյունից։ Այս ճանապարհով երթևեկող վարորդներից չկա մեկը, որ Գուրգենին չճանաչի։ Նա սովորում է Գոլովինո գյուղի դպրոցում և միշտ մենք նրան դպրոց ենք փոխադրում, բայց հետը պայման ենք կապել։ Նա իր օրագիրը ցույց է տալիս, եթե թվանշանները լավն են, նստեցնում ենք ավտո, իսկ եթե վատն են լինում, ուրեմն պիտի ոտքո՛վ տուն գնա։

—Իսկ պատահե՞լ է, որ նա ոտքով տուն գնա, - հարցրեց ուղևորներից մեկը։

—Մի անգամ պատահել է,—ասաց վարպետ Շահենը և ավելի հարմար նստելով ղեկի մոտ, սկսեց պատմել։

—Խոր աշուն էր, սառը քամին թափանցում էր նույնիսկ իմ խցիկը։ Ձյունախառն անձրևը անընդհատ ծածկում էր ապակիները, և ճանապարհը հազիվ էր երևում։ Երբ մոտեցա Գոլովինոյին, իսկույն միտքս ընկավ Գուրգենը։ «Տեսնես գյուղո՞ւմ է, թե արդեն տուն է գնացել,— մտածեցի ես,— գոնե հանդիպեր, վեր բարձրացնեի, մեղք է, կմրսի»։ Մեկ էլ տեսնեմ, ինչպես հեռվում երևաց նա։ Պայուսակը ձեռքին շտապ կտրեց ճանապարհը և, չնայելով իմ կողմը, մտավ անտառ։ Շատ զարմացա։ Մեքենան կանգնեցրի ու դուրս եկա։

Գուրգենն արդեն հազիվ էր նշմարվում ծառերի արանքում։ Սկսեցի կանչել նրան, բայց նա ավելի արագացրեց քայլերը և կորավ աչքիցս։ «Ի՞նչ է պատահել, հո մեկը չի՞ նեղացրել տղային»,—անհանգստացա ես ու նստելով մեքենան՝ շտապեցի Գուրգենենց տուն։

Տան առաջ կանգնեցի ու սպասում եմ։ Ձնախառն անձրևն ավելի էր սաստկացել, քամին ոռնում էր կատաղորեն, բայց տղան չէր երևում։ Վերջապես նկատեցի նրան։ Գլխիկոր, ամբողջովին թրջված ու կապտած, նա դուրս եկավ անտառից և առջևում ոչինչ չնկատելով, քայլեց դեպի իրենց տունը։

Ես դուրս եկա մեքենայից և մոտեցա նրան։

—Գուրգեն, ի՞նչ է պատահել, ինչու՞ փախար ինձնից։

—Մեկ է, չէիր նստեցնի։

—Ինչու՞։

—«2» էի ստացել։

Ես ոչինչ չկարողացա ասել, միայն ձեռքս ուսին դրեցի, մի րոպե կանգնեցինք այդպես լուռ։ Հետո նստեցի մեքենան ու շարժվեցի։

«Ա՛յ թե կամքի տեր տղա է» — մտածում էի ճանապարհին...

Ով անցել է Երևան—Թբիլիսի խճուղով, անպայման Դիլիջանի մոտերքում տեսած կլինի մի փոքրիկ տղայի, որը պայուսակը ձեռքին շտապում է դպրոց, կամ դպրոցից՝ տուն։ Դա Գոլովինո գյուղի յոթնամյա դպրոցի վեցերորդ դասարանի աշակերտ Գուրգեն Խանզադյանն է։

# ՄՐՍԿԱՆ ՈՍԿԱՆԸ

Ս. ՍԿՐՏՉՅԱՆ          Նկ. ԳՐ. ԱՂԱՍՅԱՆԻ

Քուլա-քուլա ձյուն է տեղում,
Մանուկներն են դրսում խաղում:
Տանն է նստել միայն մրսկան
Մեր Ոսկանը տաս տարեկան:
Սովոր է նա մանկուց տաքի,
Միայնակ ու փափուկ կյանքի.
Կուչ է եկել, դեղնել այնպես,
Աշնան տերև լինի ասես:
Հագել է նա յոթը ձեռք շոր,
Ծածկել գլխարկ ականջավոր,
Ձեռներին էլ քաշել ձեռնոց,
Սիրտ չի անում դուրս գալ փողոց.
Քիթը հապա ո՞ւր թաքցնի,
Վա՜յ թե հանկարծ ցուրտը տանի...
Մանուկները ժիր — ժպտերես
Հռհռում են, ծաղրում նրան.
«Հե՜յ, գլուխդ դուրս չհանես,
Բուք է սաստիկ, մրսկան Ոսկան...»:
Ու զարմացած նա անհամբեր
Դուրս է նայում լուսամուտից
Ինչպե՞ս է, որ ձմեռը դեռ
Ոչ ոքի չի վրկել քթից...



# Ազնիվ արարքներ

## Հրդեհը



Սեդա Ադամյանը վաղ առավոտյան դպրոց էր գնում: Նրա տրամադրությունը սովորականից բարձր էր. մի քանի օր առաջ էր ընդունվել պիոներական շարքերը և այդ օրն էլ դասարանում հերթապահ էր: Նա շտապում էր կարգի բերել դասասենյակը: Ձորից բարձրանալով բլրակը, նա Կոլտնտեսության կալերում ծխի քուլաներ նկատեց: «Ի՞նչ կարող է լինել,— անցավ նրա մտքով,— դեզերի մոտ ի՞նչ գործ ունի ծուխը»:

Ծուխը գնալով ուժեղանում էր: «Հրդեհ է»,— ճչաց նա ու վազեց դեպի կալերը: Ճանապարհին նա զանգահարեց հրշեջ խմբին և առանց ժամանակ կորցնելու վազեց հրդեհի կողմը:

Զոր խոտը այրվում էր. կրակի լեզուները մոտենում էին հսկա դեզերին: Սեդան արագորեն մաքրեց հրդեհի և դեզերի միջև եղած խոտի մնացորդը և զգալիորեն դանդաղեցրեց կրակե լեզուների հարձակումը:

Շուտով վրա հասան կոլտնտեսականները, ապա հրշեջ խումբը և միացյալ ուժերով հանգցրին հրդեհը: Կոլտնտեսության անասունների ձմեռային կերը և մոտակա բնակարանները փրկվեցին: Բերդի միջնակարգ դպրոցի երրորդ դասարանի աշակերտուհի Սեդա Ադամյանի վարմունքը հիացրեց բոլորին:

## Զգոն պիոներները



Ցուրենիկը և Անահիտը գնում էին տուն: Նրանց ճանապարհը անցնում էր Երևան—Ախտա տանող երկաթգծի հատվածով:

Գծի ոլորանում հանկարծ Անահիտը զարմացած հարցրեց.

— Սրանք ի՞նչ քարեր են:

— Լեռնալանջից են գլորվել:

—Իսկ եթե գնացքը գա՞...

Արդեն մթնում էր:

Հեռվում լսվեց գնացքի սուլոցը: Պիոներները իրենց չկորցրին: Նրանք վազեցին գնացքին ընդառաջ և թափահարեցին կարմիր վզկապները: Մեքենավարը նկատեց, դանդաղեցրեց ընթացքը: Գնացքը փնչալով կանգ առավ և փրկվեց խորտակումից:

Երևանի երկաթուղային կայարանի պետը թանկարժեք նվերներով

պարգևատրեց 26 Կոմունարների անվան դպրոցի 6-րդ դասարանի պիոներներ Յուրենիկ Ասատրյանին և Անահիտ Արշակյանին:




Իններորդ դասարանում դաս էր: Հանկարծ օդանցքից սև ծխի քուլաներ խուժեցին ներս:

—Այս ի՞նչ բան է,— զարմացան աշակերտները և դուրս նայեցին լուսամուտից:

Վառվում էր դպրոցին կից փաբրիկայի ցեխերից մեկը:

—Հրդե՜հ:

Երկար չմտածելով Յուրիկ Կարապետյանը, Վլլիկ Մարգարյանը, Վլադիմիր Փիլոյանը և ուրիշներ պատից հանեցին կրակմարիչները և վազեցին բակ: Ֆերդինանդ Մելիք-Փարսադանյանը մագլցեց այրվող շենքի տանիքը և կրակմարիչով սկսեց հանգցնել տարածվող հրդեհը:

Շուտով վրա հասան նաև տասներորդ դասարանցիներ Վլադիմիր Ալեքսանյանը և Նիկոլայ Բոստանջյանը: Նրանք նույնպես տանիք բարձրացան:

Ուսուցիչների ղեկավարությամբ գործի դրըվեցին նաև հրշեջ խողովակները:

Երբ փաբրիկայի և հրըշեջ խմբի աշխատողները եկան, հրդեհն արդեն հանգցված էր: Երևանի Կիրովի անվան կահույքի փաբրիկայի դիրեկցիան և հրշեջ վարչությունը շնորհակալություն հայտնեցին Ճեչենկոյի անվան դպրոցի աշակերտներին:

* *

Սեդա Ադամյանը, Յուրենիկ Ասատրյանը, Անահիտ Արշակյանը, Յուրիկ Կարապետյանը և մյուս պիոներներն իրենց ազնիվ արարքի համար ներկայացվեցին պարգևատրման:

Ս. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ



Սուզակը

## ՆՈՐ ԱՇԽԱՐՀԻ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒՄԸ

Ծովային խորությունների խորհրդավոր աշխարհը վաղուց է հրապուրել մարդկանց: Քսան տարի առաջ ֆրանսիական նավաստի Ժակ-Իվ Կուստոն սկսեց պատրաստել մի այնպիսի հագուստ, որի մեջ մարդը ծովում զգար այնպես, ինչպես՝ ձուկը:

Առաջ էլ թեթև ջրասույզներ կային, որոնք սուզվում էին ծովի տակ միայն թեթև դիմակ հագած: Սուզակները միայն իջնում էին հատակը և բարձրանում: Երևանական թվականներին մեծ համբավ բերեցին նաև սովետական սուզակները, որոնք մինչև 110 մետր իջնում էին ջրի տակ:

Սակայն Ժակ-Իվ Կուստոն ուրիշ բան էր ուզում:



Երկար որոնումներից ու բազմաթիվ վտանգավոր փորձերից հետո, վերջապես, Կուստոյին և նրա ընկերոջը՝ ջրասուզակ Ֆրեդերիկ Դյումային հաջողվեց այդ բանը: Ջրասուզակի զգեստը բաղկացած էր ապակե կլոր դիմակից և երկու-երեք անոթ խտացրած օդից: Դիմակի մեջ օդը մտնում էր հատուկ հարմարանքի միջոցով: Ջրասուզակը ոտքերին հագնում էր ռետինե կոշիկներ, եթե ջուրը սառն էր լինում, հագնում էր նաև ռետինապատ զգեստ:

Այսպիսի հանդերձանքը հնարավորություն էր տալիս ազատորեն լողալ 60—90 մետր խորությամբ: Բայց այդ խորության վրա ջրասուզակը կարող էր մնալ ընդամենը 10 րոպե, հակառակ դեպքում նա լուրջ հիվանդություն կստանար և նույնիսկ կմեռներ: Բայց 40 մետր խորությամբ մարդը կարող է լողալ այնքան ժամանակ, քանի դեռ չի սպառվել անոթում եղած օդը: Իսկ այդ ընթացքում գիտության



Այս սափորները հանված են ծովի հատակից

համար ինչքա՜ն հետաքրքիր ու արժեքավոր բան կարելի է անել:

Համաշխարհային երկրորդ պատերազմից հետո, ծովերի խորքը ուսումնասիրելու նպատակով, Կուստոն կազմակերպեց ջրասուզակների հատուկ խմբակ: Երկու տարվա ընթացքում նրան հաջողվեց հավաքել այնքան հետաքրքիր նյութեր, որ 1953 թվականին լույս ընծայեց մի գիրք «Անդորրության աշխարհը» վերնագրով:

Հետագայում Կուստոն ու նրա ընկերները հատուկ սարքավորված «Կալիփսո» նավով կատարել են մի քանի նոր ու հետաքրքիր հետազոտություններ:

## ԳԱՆՁԸ ՀԱՏԱԿՈՒՄ

Մի անգամ «Կալիփսոյի» հետազոտական աշխատանքն սկսվեց այնպես, ինչպես արկածային վեպն է սկսվում:

1952 թվականի ամռանը Մարսելի ջրասուզակ Քրիստիանիի հետ դժբախտություն պատահեց: Նա սուզվեց ջրի տակ և այնտեղ շատ երկար մնաց: Դուրս գալուց հետո նրան պառկեցրին հիվանդանոցում: Հիվանդին հաճախ այցելում էր նրա ընկերը՝ Ֆրեդերիկ Դյուման: Մի անգամ Քրիստիանին պատմեց, որ նրան հաջողվել է տեսնել ծովի հատակը: Ջրասուզակը հատկապես մանրամասնորեն էր խոսում ծովային խեցգետինների մասին:




Քրիստիանին ծովային խեցգետիններ էր համարում այն սափորները, որոնց մեջ հին հույները գինի և յուղ էին պահում: Իսկ ինչպե՞ս էին հին հույների սափորներն ընկել Մարսելի մոտ, ծովի հատակը: Սա ավելի շատ հետաքրքրեց Կուստոյին ու Դյումային: Նրանք որոշեցին հետազոտության գնալ ծովի խորքը:

Առաջինը սուզվեց Դյուման, բայց ոչ մի կճուճ էլ չգտավ: Սկզբում չհաջողվեց նաև Կուստոյին, թեև նա 70 մետր իջավ ջրի տակ: Միայն վերադարձին նա տեսավ սափորները: Հետո պարզվեց, որ այդտեղ խորասուզվել էր հին հույների առևտրական մի նավ:

«Կալիփսոն» այստեղ խարիսխ գցեց, և ջրասուզակները ջրի տակից հանեցին զանազան իրեր. սափորներ, նախշուն ամաններ, մուրճ ու զանազան այլ առարկաներ, որոնք պատկանել են հազարավոր տարիներ առաջ ապրող մարդկանց: Մի քանի սափորում նույնիսկ գինի կար:

Միջերկրական ծովի հատակում հնեաբանական պեղումները շարունակվեցին նաև աշնանն ու ձմռանը և շատ արժեքավոր բան տվին գիտությանը: Ֆրանսիայի թանգարանները հարստացան նոր էքսպոնատներով (սափորներ, կավե ամաններ, հին դրամներ, տնային գործածության իրեր, ձկնորսական կարթեր և խարխախի կապարե սուզագնդիկներ): Այդ գանձերը ծովը նորից վերադարձրեց մարդկանց:

## ԽՈՒԹԵՐԻ ԱՐԱՆՔՈՒՄ

1954 թվականի ձմեռային մի գիշեր, երբ Մարսելի վրա ոռնում էր բուքը, որ հազվադեպ է այդ կողմերում լինում, «Կալիփսոն» նորից ծով դուրս եկավ: Բրիտանական նավթային ընկերության համաձայնությամբ, Կուստոն և նրա ընկերները գնում էին Պարսից ծոցում նավթ փնտրելու: Վերադարձին նրանք այցելեցին Մադագասկար կղզին և կորալյան խութերը, որոնք տարածված են Հնդկական օվկիանոսում, Սեյշելյան կղզիների շուրջը:

Այս շրջանում վերջին տարիներին մեծ հայտնագործություններ են եղել. գիտնականներին հաջողվել է բռնել մի ձուկ, որը նրանց կարծիքով ոչնչացվել էր 70 միլիոն տարի առաջ:

«Կալիպսոն» չհանդիպեց այդպիսի ձկների, բայց կորալյան խութերի ուրիշ բնակիչներ այնպես հետաքրքրեցին գիտնականներին, որ հաջորդ տարին նրանք կրկին ճանապարհորդեցին հասարակածային ջրերը:

Ամբողջ օրերով ջրասուզակները թափառեցին ստորջրյա կիրճերում ու քարանձավներում: Բաց կապտավուն կիսախավարում այդ քարանձավները թըվում էին մռայլ ու խորհրդավոր: Գորշ ստվերների նման երևում ու անհայտանում էին ձկները: Իսկ երբ էլեկտրական լամպ վառեցին, ամեն ինչ կերպարանափոխվեց: Բուստերը անկենդան գորշությունից դարձան դեղին ու կարմիր, իսկ ձկները փայլփըլում էին այնպիսի անսովոր վառ գույների ներդաշնակությամբ, որ երկրի վրա դժվար է գտնել:

...Բաց կապտա-կանաչավուն, կամ ծիրանագույն ձուկը քթով զարնվում է ջրասուզակի դիմակին: Մարդը ուզում է բռնել, բայց դա այնքան դժվար է, որքան արևի ճառագայթ բռնելը: Ձուկը փայլփլեցնելով թեփուկները, կորչում է խութերի մեջ: Նրա փոխարեն երևում է մի ուրիշ ձուկ, որը մերթ կապույտ է, մերթ վառ-դեղին:

Բայց չի կարելի երկար հրապուրվել գույների խաղով. խութերի մեջ ամեն քայլ վտանգ է սպառնում: Կարող է հայտնվել շնաձուկը կամ շոշափուկավոր ութոտնիկը: Այդ է պատճառը, որ պողպատե ձողիկներով ու դաշույններով զինված ջրասուզակները երբեք մենակ չեն համարձակվում այդպիսի տեղեր գնալ: Բայց ավելի վտանգավոր են փողոշն ու բարրակուդան: Շնաձկանը դեռ կարելի է վախեցնել ձեռքի կտրուկ շարժումներով ու փայտի թա-



փահարումով, իսկ այդ գիշատիչներին՝ նման միջոցները ավելի են կատաղեցնում:

Ջրասուզակները խութերի մեջ մնացին մի քանի շաբաթ: Այս անգամ նրանք ճանապարհորդում էին տորպեդոյի հիշեցնող «ստորջրյա սկուտերով», որին ամրացրել էին էլեկտրամոտոր և ակումուլյատոր (ուժահավաք): Բռնելով այդպիսի տորպեդոյից ջրասուզակը կարող է մեկ ժամում լողալ 5.5 կիլոմետր:

Գիտնականներին հաջողվեց գտնել ձկան մի քանի նոր տեսակներ: Մեծ արժեք են ներկայացնում բնական միջավայրում գտնվող ծովային բնակիչների գունավոր լուսանկարահանումները:

Խութերից մեկի մոտ ջրասուզակները հանդիպեցին անգլիական բեռնատար «Տիստլեգորմ» նավին, որը ֆաշիստների գցած ռումբից խորտակվել էր երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ:

## ՍՊԻՏԱԿ ԱՉՔԵՐՈՎ ՇՆԱՁԿՆԵՐԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

90—100 մետր խորությունը «թեթև» ջրասուզակների սահմանն է: Բայց չէ՞ որ դա օվկիանոսների ամենավերին շերտն է միայն: Ինչպե՞ս իմանալ նրա խորքում թաքնված գաղտնիքները:

Այս հարցը վաղուց է զբաղեցրել Կուստոյին: Բայց ոչ միայն նրան: Բազմաթիվ օվկիանոսագետներ ու կոնստրուկտորներ երազում էին հետազոտել ծովային անդունդը:

Առաջին փորձը տեղի ունեցավ 1934 թվականին: Ամերիկյան գիտնական Ուիլյամ Բիբը հատուկ հարմարանքով սուզվեց մոտ հազար մետր: 1949 թվականին Օտիս Բարտոնը գերազանցեց այդ ռեկորդը. նա հասավ մինչև հազար երեք հարյուր վաթսուն մետր խորության: Բայց «Կալիփսոյի» ջրասուզակներին հաջողվեց ավելի խոր իջնել: Լողալով Միջերկրական, Կարմիր, Սև և ուրիշ ծովերով, Կուստոն ու ամերիկյան ինժեներ Էջերտոնը ստորջրյա մի քանի հազար նկարահանումներ կատարեցին: Նրանց հաջողվեց նկարել այսպես կոչված «կեղծ հատակը»: Սա ջրի այն շերտն է, որը հարուստ է բուսական ու կենդանական բազմաթիվ օրգանիզմներով, որոնք զանգվածային այնպիսի շերտ են առաջացնում, որ շատ նման է ծովի հատակի: Նկարահանված է խալոպարֆիրուս ձուկը, որը մեջքին ունի ասեղի նման սուր ու երկար լողաթև, ասես անտենա լինի: Դրա միջոցով, հավանական է, խալոպարֆիրուսը իմանում է ուրիշ ձկների մոտենալը և զգուշանում նրանցից:

...1953 թվականին, երկար տարիների աշխատանքից հետո, ստեղծվեցին երկու նոր ստորջրյա ականներ, մեկը Ֆրանսիայում՝ ինժեներ Վիլմի ղեկավարությամբ, մյուսը Իտալիայում՝ հայտնի հետախույզ պրոֆեսոր Պիկկարի նախագծով: Այդ աշխատանքներին մասնակցում էր նաև Կուստոն:

Ֆրանսիական ստորջրյա ականը՝ բատիսկաֆը, մեծ առավելություններ ունի և կառուցված է սուզանավի սկզբունքով: Բատիսկաֆի պատերը սարքված են չորս միլիմետր հաստություն ունեցող երկաթյա թիթեղներից: Հատուկ անոթներում պահվում է խտացրած օդ: Բատիսկաֆը աշխատում է բենզինով, ունի հզոր ակումուլյատորներ, սեփական ռադիոկայան, երկու ուժեղ լուսարձակ: Ծովի խորքում նա կարող է ազատորեն լողալ երկու պտուտակի շնորհիվ, որոնք միաժամանակ ծառայում են որպես ղեկ: Մարդիկ տեղավորվում են պողպատե կլոր խցիկում, որը գտնվում է բատիսկաֆի տակ:

Առաջին փորձնական սուզումը տեղի ունեցավ 1953 թվականի օգոստոսի 7-ին: Կապիտան Գուոն և կոնստրուկտոր Վիլմը իջան մոտ 750 մետր: Այնուհետև նրանք էլի սուզվեցին՝ աստիճանաբար ավելացնելով խորությունը: Նրանց հետ մի քանի անգամ սուզվեց նաև Կուստոն: Նա մեծ հուզմունքով անցավ այն գիծը, որը համարվում էր ջրասուզակների սահմանը: Ջուրը հստակ էր, բայց 180 մետրից հետո դարձավ պղտոր: Կեղծ հատակից այն կողմ նրանք տեսան մի թանաքաձուկ: Ընկնելով պայծառ լույսի տակ, ձուկը բաց թողեց պաշտպանո-

դական հեղուկը: Սովորաբար այդ հեղուկը սև է լինում, ավելի ճիշտ՝ թանաքի նման, բայց այստեղ նա սպիտակ էր: Երբ մարեցին լուսարձակները, «սպիտակ թանաքի» ամպիկները շարունակում էին լույս տալ ու փայլել ֆոսֆորի նման:

Խիզախ ջրասուզակները ինչքա՜ն հետաքրքիր բաների ականատես եղան: Նրանք հանդիպեցին այնպիսի շնաձկների, որոնք սպիտակ աչքեր ունեին: Ծովի հատակում նրանք տեսան նաև լրագիր:

1953 թվականի սեպտեմբերի 30-ին պրոֆեսոր Պիկկարը իր «Տրիեստ» բաթիսկաֆով սուզվեց 3 հազար 150 մետր և ջրի տակ մնալով երկու ժամ 12 րոպե, անչափ հետաքրքիր կինոնկարահանումներ կատարեց: Իսկ 1954 թվականի փետրվարի 15-ին Գուոն և Վիլմը Աֆրիկայի արևմտյան ափերի մոտ սուզվեցին չորս հազար հիսուն մետր: Նրանք հասան հատակին և այնտեղ շրջեցին մոտ չորս կիլոմետր:

Այժմ կոնստրուկտորներն աշխատում են այնպիսի բաթիսկաֆի վրա, որով հնարավոր լինի իջնել օվկիանոսի ամենախոր տեղը: «Ի՞նչու մտածել ուրիշ աշխարհներ կատարվելիք ապագա ճանապարհորդությունների մասին, քանի որ մեր սեփական մոլորակի 70 տոկոսը մեզ դեռ անծանոթ է», ասում է Կուստոն:

Մարդկությունը ի վիճակի է կատարելու թե՛ այս, և թե՛ այն: Նա կարող է և՛ թռչել դեպի միջմոլորակային տարածությունները, և՛ թափանցել օվկիանոսի խորքերը:

## ԻՆՉՈՒ՞ ԵՆՔ ԱՅՍՊԵՍ ԱՍՈՒՄ...

Մեր ականջին բոլորովին էլ խորթ չի հնչում, երբ ասում ենք՝ «արևը ծագեց», «արևը դուրս եկավ», «արևը մայր է մտնում»: Այդ բոլորովին էլ չի նշանակում, թե արևը շարժվում է, իսկ երկիրն անշարժ է, կամ արևը գնում է իր մոր մոտ: Գիտությունը վաղուց արդեն ապացուցել է, որ երկիրն է պտտվում արեգակի և իր առանցքի շուրջը: Սակայն այդպես ենք ասում, որովհետև այդ արտահայտությունները գալիս են շատ հին ժամանակներից: Առաջ մարդիկ կարծում էին, թե արեգակն է շարժվում երկնքում և առավոտյան դուրս գալով արևելքից, մայր է մտնում արևմուտքում: Այստեղից էլ առաջացել են արևելք, արևմուտք բառերը: Բառերն ու դարձվածքները չեն փոխվել, բայց նոր իմաստ են ստացել:

* * *

Հնում որևէ ապրանքի թանկությունը շեշտելու համար մարդիկ ասում են՝ «կրակի գին ունի», այնինչ այժմ կրակը ամենից էժան բանն է: Այս արտահայտությունը նույնպես գալիս է շատ հնից, երբ բնության տարերքի դեմ անզոր մարդը շատ դժվարությամբ էր ստանում կրակը: Օրինակ, կայծակը խփում էր ծառին և այրում, կամ՝ մի անգամ ձեռք բերած կրակը անմար էին պահում: Այդ պատճառով էլ այն համարվում էր թանկարժեք բան:

Վ. ՔՈՍՅԱՆ

# Ժամանց



### ԼԱՎ ՄՏԱԾԻՐ, ՀԵՏՈ ԱՍԱ.

Տարբեր մեծության քանի՞ եռանկյունի կա այստեղ:



## ԱՐԱԳ ՊԱՏԱՍԽԱ՛ՆԻՐ

Երբ փողոցի տները համարակալված են 1-ից մինչև 50, ապա քանի՞ անգամ կհանդիպի «4» թվանշանը:

## ԿԱՐՈ՞Ղ ԵՍ

18

Տասնութը կիսել այնպես, որ ստացվի 1:



## ՈՐՏԵ՞Ղ

Կարելի՞ է արդյոք կառուցել այնպիսի տուն, որի բոլոր պատերն ուղղված լինեն դեպի հարավ:



## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

«Պիոներ» 1956 թ. № 12
«Խոսում է Մոսկվան» —
«Շնորհավոր նոր տարի»:
«Գծերի օգնությամբ»





«Պիոներ» 1957 թ. № 1
«Կրոսվորդ» — հորիզոնական 1. Վան, 5. Սենեգալ, 8. Լյեժ, 9. Կալե, 11. Կիրովսկ, 12. Չադ:
Ուղղահայաց — 2. Ադեն, 3. Վենետիկ, 4. Սարանսկ, 6. Իլի, 7. Ֆես, 10. Կոլա:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ




Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса № 21.

Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06, 2—53—37

ՎՖ 01053, Պատվեր 39, Տիրաժ 5000: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 1/II 1957 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:

Գինը 2 ռ.

# Մուկուչի գժությունները



1) Էլի ինձ վաղ կզարթնեցնե՛ս...



2) Ի՞նչ եք կռվում։ Ա՛յ ձե՛զ...



3) Ինչպես փախան, է...



4) Հա՛, հա՛, հա՛...



5) Կա՛ց...



6) Վա՛յ...

(«ՀԱՍԿԵՐ» ամսագրից, նկ. ՌՈՏՏԵՐԻ)